# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

**«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банакн, № 15.**

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 1. 90



*Հանձնված է արտադրության 01.11.89 թ.: Ստորագրված է տպագրության 17.01.90 թ.: ՎՖ 03403, Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 51032: Պատվեր՝ 1301: Գինը՝ 15 կոպեկ:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 01.11.89 г. Подписано к печати 17.01.90 г. Формат 70×100 1/16. ВФ 03403. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печат. 2,92 усл. печ.листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 51032. Заказ 1301. Цена 15 коп.

**Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.**

**Շապիկի 1-ին էջին՝ գործ՝ Մարտին Պետրոսյանի**

**Այսօր Խորհրդային Միության ժողովուրդներն ազգային զարթոնք են ապրում, և դրա գլխավոր ապացույցներից մեկն էլ այն է, որ շատ հանրապետություններում, որտեղ պետական լեզուն ռուսերենն էր, գերագույն խորհուրդների նիստերում արդեն տվյալ ազգային լեզուն է պետականի կարգավիճակ ձեռք բերում: Եվ չնայած Հայկական ԽՍՀ-ում միշտ էլ հայոց լեզուն է որպես պետական ճանաչվել, այնուամենայնիվ, տարիներ շարունակ ազգային ինքնագիտակցության ինչ-որ չափով կորստի ու միաժամանակ «վերևից» արհեստականորեն պատրաստված խոչընդոտների պատճառով մեր մայրենի լեզուն հայտնվել է սոցիալական ու քաղաքական կալանավորի վիճակում:**

**Գաղտնիք չէ, որ շատ հայ երեխաներ՝ քչերն ստիպված, իսկ շատերը որոշակի նպատակներ հետապնդելով, հաճախում են ռուսական դպրոցներ: Աղավաղված է մեր ազգային դպրոցի դիմագիծը, մինչդեռ շատ հայ գրողներ ու մտածողներ դպրոցը, լեզուն համարել են ազգի հիմքը:**

**Ընդհանուր առմամբ այս վիճակից է ծագում և այս վիճակին է վերադառնում մեր ամսագրի պատասխանատու քարտուղար Թադևոս Տոնոյանի հարցազրույցը մայրաքաղաքի Ա. Մռավյանի անվան № 25 ռուսական միջնակարգ դպրոցի աշակերտների, ուսուցիչների և տնօրենի հետ: Հարցազրույցն ընդմիջվում է այն վարողի փոքրիկ մենախոսություններով, որոնք առնված են փակագծերի մեջ:**

ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ— (Մինույն է, այս հարցն աշակերտներին տալու եմ: Ճիշտ է, սկզբի համար երևի փոքր-ինչ հակա-տրամադրող է, բայց դրա փոխարեն ցույց կտա զրույցի հետագա ընթացքը որոշակիացնող, քանի որ շատ կարևոր մի բան հենց սկզբից պարզ կդառնա, ուրեմն...),—Երեխաներ, ինչպե՞ս պատահեց, որ դուք, լինելով հայեր, դարձաք ռուսական դպրոցի աշակերտ:

ԴԱՎԻԹ ՕՀԱՆՋԱՆՅԱՆ, 10-րդ դաս.— Առաջին հերթին՝ այն ժամանակ, երբ մենք դպրոց պետք է գայինք, հայոց լեզվի հարցը բարձրացված չէր ինչպես հիմա, մեր ծնողները, կարելի է ասել, մտածում էին, որ բուհ ընդունվելիս, ի-



# ՀԱՐՑԱԶՐՈՒՅՑ

րենց երեխաները պետք է ռուսաց լեզվի քննություն հանձնեն և եթե հայկական դպրոց ավարտեն, ռուսերեն վատ կիմանան ու ընդունվելը դժվար կլինի:

Թ. Տ.— Իսկ ո՞վ է ասում, որ բուհ ընդունվելու համար անպայման ռուսերենից պետք է քննություն հանձնել: Ես, օրինակ, ավարտել եմ համալսարանի բանասիրական ֆակուլտետի հայկական բաժինը և հիշում եմ, որ ընդունվելիս ռուսերենի քննություն չեմ հանձնել: Ըստ երևույթին՝ ձեր ծնողներն են նախօրոք մտածել, որ դուք պետք է բուհերի ռուսական բաժիններ դիմեք...

Դ. Օ.— Մեր ապագայի մասին են մտածել...

Թ. Տ.— Դավիթ, ինձ ասացին, որ դու հայկական դպրոցից ես տեղափոխվել ռուսական, կարծեմ՝ 3-րդ, թե՞ 4-րդ դասարանից:

Դ. Օ.— Երեք տարի ես սովորել եմ Չարենցի անվան հայկական դպրոցում, հետո, այո, տեղափոխվեցի ռուսական դպրոց, որովհետև իմ առաջվա դպրոցը անգլիական թեքումով էր, իսկ ես այն ժամանակ անգլերենը չէի սիրում, ծնողներս էլ որոշեցին՝ լավ կլինի, որ գոնե ռուսերեն սովորեմ, որովհետև մտածում էին, թե բուհերի ռուսական ֆակուլտետներում ավելի լավ են դասավանդում, ավելի շատ բան են սովորեցնում: Իմ նախկին դպրոցը բացասական կողմեր էլ ուներ. երեխաներին այնտեղ վատ էին վերաբերվում: Հիմա կարծեմ կոլեկտիվը շատ է փոխվել, լավացել, բայց ես չեմ զղջացել, որ ռուսական դպրոց եմ եկել, որովհետև մեր դպրոցում հայոց լեզվի հարցը լավ է դրված, հատկապես այս վերջին երկու տարում:

Թ. Տ.— Շատ լավ է, որ ռուսական դպրոցում հայոց լեզվի դասավանդման մակարդակը բարձրացել է: Բայց ուզում եմ պնդել իմ առաջին հարցը. ինչպե՞ս եղավ, որ դուք, լինելով հայ, հաճախում եք ռուսական դպրոց, և որտե՞ղ է տրամաբանությունը, որ այդ բանից հետո միխ-

թարում եք իրենց ձեզ, թե հայոց լեզուն այստեղ լավ են դասավանդում:

ՎԱՀՐԱՄ ՔԱՄԱԼՅԱՆ, 9-րդ դաս.— Ես, օրինակ, ռուսական դպրոցում եմ սովորում, որովհետև ծնողներս Մոնղոլիայում էին աշխատում, և ես այնտեղ մինչև 4-րդ դասարանը հաճախում էի ռուսական դպրոց: Դե, իսկ երբ եկանք Հայաստան, այլևս չէի կարող հայկական դպրոցում սովորել:

Թ. Տ.— Հովհաննես, դու ի՞նչ կասես:

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՍԱՀԱԿՅԱՆ, 6-րդ դաս.— Ես ռուսերեն կարդալ-գրել ավելի շուտ սովորեցի...

Թ. Տ.— Ո՞վ սովորեցրեց, մայրի՞կդ, հայրի՞կդ: Հայե՞ր են նրանք:

Հ. Ս.— Տանն եմ սովորել: Ծնողներս հայեր են, բայց Վրաստանից են...

Թ. Տ.— (Զգիտես ինչու՝ մտքիս մեջ քարտեզ է գծագրվում. ահա Խորհրդային Միությունը, ահա և Հայկական ԽՍՀ-ն: Սա Մոնղոլիան է, իսկ սա Վրաստանը՝ Հայաստանից նույնքան հեռու է, որքան Մոնղոլիան: Կարո՞ղ է Հովհաննեսն ինձ հակառակն ապացուցել):

Դ. Օ.— Խորհրդային Միությունում ազգամիջյան լեզուն ռուսերենն է, և անհրաժեշտ է ռուսերեն լավ իմանալ, որպեսզի կարողանանք նաև մեր ժողովրդի շահերը պաշտպանել: ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների 1-ին համագումարի ամբիոնից խոսող անդրբեջանցի դեպուտատների մեջ կային այնպիսիները, որոնք վատ էին խոսում ռուսերեն, իսկ հայ դեպուտատները իրենց մտքերը կարողացան հաղորդել ճիշտ ռուսերենով...

Թ. Տ.— Այո, դա առավելություն է: Բայց մի՞թե դրան պետք է հասնել ազգային դպրոցը կորստյան վտանգի ենթարկելու գնով:

Ընկեր Շողերյան, հարցն ուզում եմ ձեզ ուղղել: Մեր ժողովուրդն այսօր ազգային զարթոնք է ապրում: Ինձ հետաքրքրում է՝ այս տարի իրենց երեխաներին առաջին դասարան բերող ծնողներն ինչպիսի՞ տրամադրվածություն ունեին. երեխային հայկակա՞ն դասարան բերել, թե՞ ռուսական, չէ՞ որ ձեր դպրոցում ևս այս ուսումնական տարի մեկ հայկական առաջին դասարան է բացվել: Դարձյա՞լ ռուսականի համար հերթ է, դարձյա՞լ շատ են ծանոթի միջոցով ու այլ ճանապարհներով իրենց երեխաներին ռուսական դպրոց «դասավորելու» փորձ անող ծնողները:

Ընկ. ՇՈՂԵՐՅԱՆ.— Գիտե՞ք, այդ մեկ հայկական դասարանն էլ հազիվ հավաքեցինք: Շատ ծնողներ դարձյալ ուզում են, որ իրենց երեխաները ռուսական կրթություն ստանան: Իհարկե, նրանք ուզում են նաև, որ իրենց զավակները հայերենը խորացված ձևով անցնեն...

Թ. Տ.— (Խորացված ձևով..., խորացված... հիմա էլ հայոց լեզվին սկսել են վերաբերվել որպես կարևոր ԱՌԱՐԿԱՅԻ: Ինձ թվում է՝ հենց այդ է պատճառը, որ հայկական դպրոցներում ևս հայոց լեզուն պահանջվող մակարդակով չեն անցնում: Սա դեռ իր հերթին, շատ ուրիշ պատճառներ էլ կան: Տվյալ առարկան սիրել-չսիրելու հարցը առավելապես կախված է նաև այն դասավանդող ուսուցչից: Հայոց լեզվի դասագրքերն էլ երևի անհրաժեշտ է թարմացնել՝ ավելի շատ կապելով ոչ թե կանոնների սերտման հետ, այլ գեղարվեստական խոսքի՝ մայր գրականության: Մեկ անգամ չէ, որ աշակերտներից լսել եմ՝ հայոց լեզուն սիրում եմ, բայց այդ առարկան՝ ոչ),— Ի՞նչ եք կարծում, ճի՞շտ սկզբունք է, գնալ ռուսական դպրոց՝ հայերենի խորացված ուսուցմամբ՝ ինչպես ասում են:

Ընկ. ՇՈՂԵՐՅԱՆ.— Ես կարծում եմ, որ ամեն մարդ ինքը պետք է որոշի՝ ռուսակա՞ն դպրոց է գնալու, թե՞ հայկական:

Թ. Տ.— Ձեզ չի՞ թվում, որ մարդը նախևառաջ պատասխանատու է իր ազգի առաջ: Համենայնդեպս, նա իրավունք չունի կորցնելու այն, ինչը սերունդներինն է, բայց իր պատճառով անվերադարձ է կորելու՝ իր մայրենի լեզուն... (մանավանդ եթե նա փոքր ածու ազգի ներկայացուցիչ է: Հայն իրավունք ունի՞ նման շռայլության: Ակամա մտաբերում եմ Կոնստանտին Ուշինսկու խոսքերը, որ այնքան տեղին են նման մի պահի. **«Եվ չկա ավելի անտանելի բռնություն, քան այն, որն ուզում է ժողովրդից խլել նրա ապրած, գնացած նախնիների անհամար սերունդների ստեղծած ժառանգությունը: Խլեցեք ժողովրդից ամեն ինչ, նա կարող է վերականգնել, սակայն խլեցեք լեզուն, և նա այլևս չի ստեղծի այն: Ժողովուրդը կարող է ստեղծել նույնիսկ նոր հայրենիք, բայց լեզու՝ երբեք. մահացավ լեզուն ժողովրդի շուրթերին՝ մահացավ և ժողովուրդը»**):— Գիտե՞ք, ընկեր Շողերյան, Երևանում այսօր մոտ 150 հազար աշակերտ կա, կարծեմ 50 հազարը ռու-

սական դպրոց է հաճախում: Եթե այդ տրամաբանությամբ շարունակվի, այսինքըն՝ նման, թվում է՝ դեմոկրատական սկզբունքով, ինչը իմ կարծիքով հայի համար տվյալ դեպքում հավասար է անսկզբունքայնության, մենք կկորցնենք մեր ազգային դեմքը, կդատարկվեն հայկական դպրոցները: Օրինակ՝ քանի՞ աշակերտ ունի ձեր դպրոցը, քանի՞սն են հայեր, ռուսներ, այլազգիներ...

ԸՆԿ. ԾՈՂԵՐՅԱՆ.— Մոտ հազար աշակերտ, որից 98—99 տոկոսը հայեր են, մնացած 1—2 տոկոսը ռուսներ և այլազգիներ:

Թ. Տ.— Ռուսական դպրոցում, ուրեմն, աշակերտների 98 տոկոսը հայեր են, և դա այն դեպքում, երբ մեր հանրապետության պետական լեզուն միշտ հայերեն է եղել: Մյուս հանրապետություններում միայն այժմ են պայքարում իրենց ժողովրդի լեզուն պետական հռչակելու համար: Ի՞նչ պետք է եզրակացնել. այն, որ եթե հանրապետության Գերագույն խորհուրդը տվյալ լեզուն պետական է հռչակում՝ շատ քիչ է, որովհետև կարևորն այնպիսի պայմանների ստեղծումն է, որոնց առկայության դեպքում լեզվի պետականությունը ոչ թե փաստաթղթերում արտացոլվի, այլ դրսևորվի գործնական կյանքում: Մինչդեռ մեզ մոտ ամեն ինչ հակառակն է. ռուսական դպրոցները գեղեցիկ վերանորոգվում, կառուցապատվում ու կահավորվում են, իսկ հայկական դըպրոցներում հազիվ են հասցնում նստարան ներկել, աթոռների կոտրված ոտքերը մեխել... Ի՞նչ օգուտ լեզուն պետական հռչակել, երբ ամեն քայլափոխի հանդիպում ես լեզվական աղավաղումների, լեզվի նկատմամբ արհամարհանքի: Եվ այս ամենը՝ ազգային ողբերգության ու արցախյան համաժողովրդական շարժման օրերին:

Դ. Օ.— Այն հայերը, որ հայերեն չեն կարողանում խոսել, արդեն հայ չեն: Դրանք մեծ մասամբ հանրապետությունից դուրս բնակվողներն են, որ մնացել են առանց մայրենի լեզվի դասագրքերի, ապրել են օտարների մեջ և վերջիվերջո կորցրել են իրենց ազգային դեմքը:

Թ. Տ.— Ես զարմացած եմ քո համարձակության վրա: Համենայնդեպս, նա, ով հայ լինելով՝ Հայաստանում ռուսական դպրոց է հաճախում, բարոյական ոչ մի իրավունք չունի դատելու այն հայերին, որոնք «դրսում են»: Եթե նույն դաժանությամբ, համարձակությո՞ւն՝ սխալ որակեցի, այո, եթե նույն դաժանությամբ ես քեզ ու քո համադասարանցիներին վերաբերվեի, առավել ևս առաջին հերթին դուք ինքներդ «արդեն հայ» չէիք լինի: Ինչո՞ւ ենք այսքան փափուկ խոսում հայրենի հողի վրա ապրող և ռուսական դպրոց հաճախող հայերի հետ: Ինչո՞ւ չենք փակում ռուսական հորջորջվող դպրոցները, ինչո՞ւ դպրոցը չպետք է միատարր լինի, հայը պետք է հայ դպրոց հաճախի ու եթե ռուսական դպրոց չի հաճախում, նացիոնալիստ չէ, ոչ էլ զուրկ է ինտերնացիոնալիզմի գիտակցությունից, ինչպես տարիներ շարունակ մեզ վախեցրել են: Ու ոչ էլ ռուսական դպրոց հաճախող հայն է ինտերնացիոնալիստ: Ինտերնացիոնալիստ լինելուց առաջ նա նախ ապազգային տարր է: Եթե Հայաստանը ԽՍՀՄ կազմում է, դպրոցներում կարիք կա ռուսերեն անցնելու, ինչ խոսք, չեմ կարող չհիշել «որքան լեզու գիտես, այնքան մարդ ես», ու նաև՝ «մարդ իր թշնամու լեզուն պետք է լավ իմանա» իմաստուն մտքերը: Իսկ Դավիթի խոսքերից ինչ է հետևում. հայհոյողին հայհոյում են հայհոյելու համար: Ո՞ւր է տրամաբանությունը: (Զգում եմ, որ Դավիթն ինքը իմ պատասխանից հետո հասկացել է իր սխալը: Ինձ ստուգելու համար հարցնում եմ).— Կուզենայի՞ք, որ ռուսական դպրոցները փակվեին:

Վ. Ք.— Այո, բայց թող մեկը մնա...

Դ. Օ.— Ռուսների համար:

Թ. Տ.— (Մենք նորից չմոռացանք հարևանին, Վահրամի պատասխանը անչափ միամիտ ու անկեղծ էր: Սա չէ՞ ինտերնացիոնալիզմը):

ՍՈՒՍԱՆՆԱ ՆԻԿՈՂՈՍՅԱՆ, ռուսաց լեզվի ուսուցչուհի.— Քանի որ Խորհրդային Միության կազմում ենք.

Թ. Տ.— Այո, ռուսերեն պետք է իմանալ, բայց մի՞թե անպայման ռուսական դպրոցում:

Ս. Ն.— Մեր հայկական դպրոցներում ռուսերենը ահավոր ցածր մակարդակով է ուսուցանվում:

Թ. Տ.— Կարծեմ դուք հայկական դըպրոցից եք տեղափոխվել այստեղ:

Ս. Ն.— Այո:

Թ. Տ.— Ուրեմն՝ դուք ևս մեղավոր եք, որ հայկական դպրոցում ռուսերենի իմացությունն, ինչպես ասացիք, շատ վատ է: Բայց ինձ թվում է, որ սովորողը կսովորի և սովորեցնողն էլ կսովորեցնի, իսկ

չսովորողը ռուսական դպրոցում էլ չի սովորի, չսովորեցնողն էլ չի սովորեցնի: Ընդհանրապես ի՞նչ եք կարծում, հայկական դպրոցի մակարդա՞կն է բարձր, թե՞ ռուսական:

Դ. Օ.— Ռուսական:

Թ. Տ.— Մակարդակ ասելով ի՞նչ ես հասկանում, Դավիթ:

Դ. Օ.— Օրինակ աբրաշչենիան... բանը... վերաբերմունքը առաջին հերթին, հայկական դպրոցում փոքր երեխաներին խփում են քանոններով...

Թ. Տ.— Այստեղ ոչ մի ուսուցիչ ձեզ չի՞ խփում:

Դ. Օ.— Ոչ, մեր դպրոցում չեն խփում:

Ս. Ն.— Մեր դպրոցում ուրիշ ձևի է, դեմոկրատիչնը:

ՍՈՒՍԱՆՆԱ ՉՈԲԱՆՅԱՆ, հայոց լեզվի ուսուցուհի— Ասեմ, ռուսականի մակարդակը բարձր է առաջին հերթին ուսուցչական կազմով...

Թ. Տ.— Ներողություն, ես հրաշալի ուսուցիչներ եմ ունեցել, բարձր մակարդակի մարդիկ, միաժամանակ և մասնագետներ: Հայկական դպրոցում:

Ս. Չ.— Գիտե՞ք, այն ընտանիքները, որոնք բարեկիրթ էին, իրենց զավակներին ուղարկեցին ռուսական, որովհետև ռուսականում մակարդակը բարձր է:

Թ. Տ.— Դուք ինձ և բոլոր հայկական կրթություն ստացողներին վիրավորում եք: (Ես գիտեի, որ ռուսական դպրոց հաճախող ընտանիքները, այո, կարելի է նաև այսպես ասել՝ ընտանիքները, իրենց ավելի կուլտուրական են համարում: Սակայն ինձ զարմացրեց այն հանգիստ տոնը, որով իր միտքն արտահայտեց ուսուցչուհի ընկեր Չոբանյանը: Նա չէր էլ կարծում, թե այդպիսով վիրավորում է իր ժողովրդին, իր ազգին: Եվ երբ ես հայտնեցի, որ վիրավորված եմ, նա անակնկալի եկավ ու փորձեց այլ կերպ մեկնաբանել Հայաստանում ապրող հայ երեխայի՝ ռուսական դպրոցում հայտնըվելու փաստը):

Ս. Չ.— Չէ... կյանքի պայմաններն ընտիպեցին, որ մենք մեր երեխաներին տանենք ռուսական դպրոց, մեր երկրում, առանց ռուսերենի հեռու չես գնա: Մենք էլ ուզում ենք, որ մեր երեխան բուհ ընդունվի, ինչ-որ պաշտոն զբաղեցնի, իսկ այդ դեպքում ռուսերեն է պետք:

Թ. Տ.— (Այս պահին ինձ թվաց, որ նման կերպ կարող են մտածել միայն նրանք, ովքեր հաշտվել են այն մտքի հետ, թե մենք ապրում ենք «օբշչի դոմ» կոչվող երկրում: Մի՞թե տունը կարող է օբշչի՝ ընդհանուր, լինել: Օբշչի կարող է լինել միայն օբշչեժիտիեն՝ հանրակացարանը: Պայմանները, պայմանները... Այդ ինչպե՞ս եղավ, ընկեր Չոբանյան, որ այդ պայմաններ կոչվածները չկարողացան ինձ ստիպել ռուսական դըպրոց գնալ, իսկ ձեզ կարողացան համոզել, որպեսզի ձեր տղային ռուսական դպրոց տանեք՝ ինքներդ լինելով հայոց լեզվի ուսուցուհի: Ճիշտն ասած՝ ես առաջին անգամ էի հանդիպում նման դեպքի: Եվ սա՞ է մակարդակը: Ուրեմն՝ մի՞թե նաև ձեր պատճառով չէ, որ այս ուսումնական տարում ձեր դպրոցում բացված հայկական մեկ առաջին դասարանի համար հազիվ 20—21 աշակերտ է հավաքվել, այն էլ այն բանից հետո, երբ ուսուցիչները դպրոցի շրջակայքում գտնվող տներն են գնացել հայտնելու բացվող առաջին հայկական դասարանի մասին և երեխաներ հավաքագրելու: Բայց դուք գիտեք, որ ձեր կասկածի առաջին զոհը ինքներդ եք դառնալու: Բացատրեմ. եթե շարունակվեր այն տրամաբանությամբ, որով ինքներդ էիք փորձում հիմնավորել ձեր խոսքը, ապա վաղը դառնալու եք գործազուրկ: Քանի որ, վերջիվերջո, բոլոր ընտանիքներն էլ կուլտուրական դառնալով, ռուսական են գնալու (թե՞ ռուսական գնալով կուլտուրական են դառնալու)՝ ըստ ձեր ըմբռնման, դուք, լինելով հայոց լեզվի ուսուցչուհի՝ հանկարծ հայտնվելու եք նյութական կարիքի ճիրաններում, որովհետև հայկական դըպրոց չի լինելու, որպեսզի հայոց լեզվի ուսուցչուհին աշխատանք ունենա: Ահա ձեզ բարեկեցիկ կյանք ու ահա ձեր նետած բումերանգի հարվածը: Ավելի ճիշտ չէ՞ ձեր դպրոցի ֆիզկուլտուրայի ուսուցիչ Վարուժան Խաչատրյանը, որը, մինչ այս չխառնվելով մեր հարցազրույցին, այնուամենայնիվ, ձեր խոսքերը լսելով չկարողացավ զսպել իրեն:

Վ. ԽԱՉԱՏՐՅԱՆ, ֆիզկուլտուրայի ուսուցիչ.— Իրենց զավակներին ռուսական դպրոց ուղարկող հայ ծնողները քաղքենիներ են: Ուրիշ պատճառ չկա:

Ս. Ն.— Կա՛: Կարելի՞ է, ես մինչև վերջ անկեղծ լինեմ, կարելի՞ է: Ուրեմն այսպես... Ծնողներն իրենց երեխաներին ռուսական դպրոց են բերում, որպեսզի... երեխաներն էլ այստեղ են, մի քիչ էլ անհարմար է...



Թ. Տ.— Ոչինչ, անկեղծությունը նրանց չի խանգարի, և կարիք էլ չկա նրանցից ինչ-որ բան թաքցնել...

Ս. Ն.— ... որպեսզի Ռուսաստան գնան բուհ ընդունվելու, այնտեղ ընդունվելն ավելի էժան է, կրկնակի էժան...

Թ. Տ.— Ձեր պնդումները միմյանց հակասում են։ Քիչ առաջ դուք ասում էիք, որ ռուսական դպրոցի մակարդակն ավելի բարձր է հայկականից։ Եթե այդպես է, եթե, իրոք, ռուսական դպրոցն ավարտած երեխան ավելի շատ գիտելիքներ ունի, ապա ինչո՞ւ պետք է փողով ընդունվելու մասին մտածի։ Ես հասկանում եմ, որ շատերն էլ դրսում աշխատում են սոսկ ապահովել իրենց գիտելիքների ճիշտ գնահատումը ընդունող հանձնաժողովների կողմից։

(Այս պահին հնչեց զանգը և մեր հարցազրույցը ընդհատվեց։ Գուցեև նախախնամությունն այդպես տնօրինեց։ Որովհետև՝ եթե այդպես շարունակվեր, բնականաբար, հարց էր ծագելու, արդյոք միայն ռուսական ավարտած երեխանների՞ն են իրենց ծնողները ծանոթի ու զանազան այլ միջոցներով բուհ ընդունել տալիս։ Իհարկե՝ ոչ։ Սակայն մի բան պարզ է, ռուսական դպրոցի օգնությամբ շատ ծնողներ աշխատում են կրճատել, կրկնակի՝ ինչպես պարզվում է, իրենց «ծախսերը»։ Այսինքն՝ լեզվի հարցը, բացի բարոյական կողմից, ունի նաև խորը սոցիալական կողմ, որը հակակշռում է մայրենի լեզվով սերունդ կրթելու բարոյականությանը՝ լինելով պետական իշխանության, կառավարման կարգի ու սկզբունքների հետևանք։ Ուրեմն՝ պայքարը պետք է կազմակերպել պետականորեն, այն էլ՝ ոչ փաստաթղթերով, այլ իշխանության կողմից գործնական միջոցների հնարավորության ստեղծմամբ)։ Ուստի՝ դիմում եմ հայ դպրոցականներին. ի՞նչ եք կարծում, ինչպիսի՞ գործնական քայլեր պետք է կատարեն մեր հանրապետության Գերագույն խորհուրդն ու Մինիստրների խորհուրդը, որպեսզի մայրենին մոր իրավունքներ ձեռք բերի և ոչ թե խղճուկ, օրեցօր հալումաշ լինող սպասուհու վիճակում մնա։

**ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ.**

**Սիրելի դպրոցականներ, մեզ շատ է հետաքրքրում ձեր կարծիքը այս հարցազրույցում շոշափվող հարցերի մասին։ Կուզենայինք նաև, որ հատկապես ռուսական և ռուսական թեքումով դպրոցների աշակերտներն իրենց տեսակետներն արտահայտեին լեզվի խնդրի շուրջ։ Սպասում ենք ձեր արձագանքներին։**

ՀԵՆՐԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
բանասիրական գիտությունների դոկտոր

# ԼԵԶՈՒՆ ՄԵՐ ՍՐԲՈՒԹՅՈՒՆՆ Է

Լեզուն ոչ միայն սոսկ հաղորդակցման միջոց է, այլև ազգի գոյության, ինքնության ու ինքնուրույնության նախապայման, հոգի ու հոգեբանություն, մշակույթի ստեղծման անփոխարինելի միջոց և հենց դրանով էլ կարևորագույն տեղ, անգնահատելի ու անչափելի դեր ունի ժողովրդի կյանքում: Ասածն առավելագույնս վերաբերում է մեր մայրենիին՝ հայոց լեզվին: Չորրորդ դարի վերջին և հինգերորդ դարի սկզբին, երբ հայ ժողովուրդը կանգնած էր ֆիզիկական ոչնչացման ու ձուլման վտանգի առջև, մեծն Մեսրոպ Մաշտոցը հանճարեղորեն կռահեց, զգաց, որ ժողովրդին հնարավոր է փրկել միայն ազգային գիր ու գրականությամբ, լեզվով, ազգային ոգին արթուն պահելով և տքնանքով ստեղծեց հայոց գիրը: Խորհրդանշական ու իմաստալից է հայերեն առաջին գրավոր նախադասությունը. «Ճանաչել զիմաստութիւն և զխրատ, իմանալ զբանս հանճարոյ», որ ուղեցույց պիտի լինի ամեն մի հայի:

Առհասարակ մարդկությունը իր հսկայական առաջընթացի, զարգացման, մեծագույն հայտնագործությունների համար ամենից առաջ պարտական է լեզվին, և ինչքան զարգանում է հասարակությունը, այնքան ավելանում է հաղորդակցության պահանջը, հետևաբար մեծանում է լեզվի դերը, ավելանում են գործառության ոլորտները, որն էլ լեզվի զարգացման հիմնական պայմանն է:

Դժբախտաբար եղել են ժամանակներ (ստալինյան չարագործ բռնապետություն, բրեժնևյան լճացման տարիներ), երբ ազգային լեզվի մասին ոչ միայն հատուկ օրենք ընդունելը, այլև նրա մասին խոսելն անգամ որակվում էր ազգայնամոլություն: Փոխվել են ժամանակները, զարթոնք է ապրում ազգային ինքնագիտակցությունը, հրապարակայնության, բացախոսության, դեմոկրատիայի ծավալման տարիներ են, նպաստավոր պայմաններ են ստեղծվել հոգալու ազգային լեզուների մասին:

Ասացինք, որ լեզվի զարգացման, մշակման, ավելի կատարելագործման նախապայմանը գործածությունն է: Եթե կյանքում կան բառեր, որոնք շատ գործածվելուց մաշվում են, փչանում, հնանում, ապա լեզուն հակառակն է, ինչքան շատ գործածվի, այնքան կհղկվի, կմշակվի, կհարստանա, կզորանա ու կզարգանա: Բայց ճշմարտությունն այն է, որ դարերի դաժան փորձությունների ճանապարհ անցած, մեր ժողովրդի գոյության, հարատևման հարցում հսկայական դեր կատարած հայոց լեզուն, որը հանրապետության սահմանադրությամբ հռչակված է որպես պետական լեզու, իրականում զրկված էր պետական լեզվի իրավունքներից և իր հայրենիքում, իր տանը գոյատևում, ապրում էր խորթ զավակի ոտնահարված իրավունքներով, պաշտոնական գրագրությունների, փաստաթղթերի, ժողովների, զանազան միջոցառումների մեծ մասը հայերեն չէր, որն էլ խիստ բացասաբար անդրադարձավ ոչ միայն հայոց լեզվի զարգացման, այլև մարդկանց հոգեբանության վրա:

Ընթերցողներից ոմանք կարող է հարց տան. մի՞թե հայոց լեզուն զարգացած չէ: Պատասխանում ենք՝ զարգացած է: Դարերի ճանապարհ անցած, հնագույն գիր ունեցող, հարուստ մշակույթի լեզուն չի կարող զարգացած չլինել: Բայց մեզ մտահոգում է ոչ միայն լեզվի ներկան, այլև ապագան: Բանն այն է, որ այսօր արդեն կյանքի որոշ ոլորտներում, հատկապես բժշկության որոշ ճյուղերում, բառակազմական արտակարգ ճկունություն ունեցող հայերենը խեղճանում է, զգում է հայերեն բառերի պակաս, մեզանից շատերի խոսքում իրոք շատ են լեզվական սխալները, մեղանչումները, շատ հայեր

չունեն հայեցի կրթություն և դժվարանում են հայերեն խոսել: Հայերենում շատ են տարածվել օտարաբանությունները՝ ոչ հայերեն բառեր, բառագործածություններ, կապակցություններ: Այս իրավիճակը լուրջ մտահոգություն է ծնում և անհանգստացնում բոլոր նրանց, ովքեր սիրում են մայրենին, մտածում են նրա ապագայի մասին: Այս մտահոգության ծնունդն է հայոց լեզվի մասին օրենքը, որը վերաբերում է բոլորին, որը պիտի կենսագործենք բոլորս:

Ինձ, որպես լեզվաբանի, որպես նախկին ուսուցչի և այսօրվա դասախոսի, ամենից առաջ հետաքրքրում է մեր դպրոցականների՝ վաղվա ուսանողների վերաբերմունքը մայրենի լեզվի նկատմամբ: Ինչո՞ւ: Որովհետև մի քանի տարի հետո նրանք են մեր աշխատողները կյանքի տարբեր բնագավառներում, լեզվի վաղվա տերն ու մշակը: Որովհետև հայոց լեզվի համակարգված ուսուցում տարվում է դպրոցներում: Որովհետև այսօր բոլորս դժգոհ ենք ոչ միայն աշակերտների, այլև շատ մեծահասակների գրագիտությունից: Ժամանակն է, որ արմատապես փոխվի բոլորիս վերաբերմունքը հարազատ լեզվի նկատմամբ:

Մեր դպրոցականներից շատերի համար հայոց լեզուն մի շարքային, սովորական առարկա է, որ պետք է սովորել գնահատական ստանալու համար: Բայց, հավատացե՛ք, լեզուն ոչ սովորական, ոչ էլ շարքային առարկա է: Դպրոցական ուսուցման հիմքը փաստորեն դրվում է լեզու սովորելով, քանի որ այն մյուս առարկաները սովորելու միջոց է: Իսկ լեզու սովորել ասելով, պիտի հասկանանք ոչ միայն անգիր արած կանոնները ու օրենքները և դրանց իմացությունը, այլև սահուն, արտահայտիչ կարդալը, խոսելը, գրելը: Երևի նկատել եք, որ ձեր այն ընկերները, ովքեր լավ չեն կարդում, դժվարությամբ են սովորում պատմություն, ֆիզիկա, դժվարությամբ են հասկանում մաթեմատիկական խնդիրներ: Ովքեր լավ, գրագետ չեն խոսում, չեն կարողանում պատմել այլ առարկաների նույնիսկ սովորած դասը: Դուրս գանք դպրոցից. ովքեր գրագետ չեն խոսում, չեն կարողանում արտահայտել իրենց մտածածն ու զգացածը, զգում են բառերի պակաս, չեն կարողանում ճիշտ ընտրել և գործածել բառերը, սխալ են կազմում քերականական ձևերը, նախադասությունները: Իսկ այդ բոլորը կարող են վերանալ, նվազել, եթե դպրոցում լավ սովորեք հայոց լեզուն:

Իսկ ի՞նչ է նշանակում լեզու լավ սովորել:

Շատերը կարծում են, թե լեզու լավ սովորել նշանակում է դասագրքում եղած բոլոր կանոնները անգիր անելը: Սա սխալ պատկերացում է: Կանոնն անգիր անելով լեզու չեն սովորում: Ոչինչ չեն սովորում: Քերականությունը ուսմունք է լեզվի մասին, պիտի օգնի լեզու սովորելուն, զգալուն, անսխալ գրելուն ու խոսելուն: Պիտի հասկանալ կանոնը, գիտակցել, պիտի կարողանալ կիրառել խոսքում: Իսկ դրա համար վարժություններ ու վարժվածություն է պետք: Այդ նպատակին են ծառայում տնային առաջադրանքները, բազմատեսակ վարժությունները, որ մեր աշակերտների մի մասը կատարում է նախքան դասը սովորելը, հասկանալը: Դասն առանց սովորելու տնային առաջադրանք կատարելը ճիշտ չէ, ձևական աշխատանք է: Ձեզ վարժեցրեք խուսափելու ձևական բաներից:

Լեզուն, չթաքցնենք, բարդ առարկա է, լեզվական օրենքները տրամաբանորեն կապված են իրար, հաջորդը բխում է նախորդից, առանց նախորդն իմանալու հաջորդը սովորել հնարավոր չէ: Լեզու սովորելիս անհրաժեշտ են արտակարգ կենտրոնացում, ուշադրություն, որպեսզի զգաք լեզվի գաղտնիքները, նրբությունները:

Գրագետ չենք կարողանում գրել ու խոսել նաև այն պատճառով, որ աղքատիկ է մեր բառապաշարը: Այն հնարավոր է հարստացնել միայն ընթերցանությամբ, հատկապես գեղարվեստական գրքեր կարդալով: Իսկ մեր աշակերտները քիչ են կարդում, շատ քիչ, չեն զգում ընթերցանության հաճույքը: Աշակերտը սովորող է, նրա հիմնական գործը սովորելն է, ինչպես ուսուցչինը՝ սովորեցնելը, բժշկինը՝ բուժելը, նկարչինը՝ նկարելը, ղեկավարինը՝ ղեկավարելը, բանվորինը՝ արտադրելը: Սովորելու համար գիրք կարդալիս պիտի լինեք ուշադիր, հիշեք բառերը, անծանոթ բառ հանդիպելիս անպայման օգտվեք բացատրական բառարանից, գրի առնեք, գեղեցիկ հատվածներն անգիր սովորեք, գրողից նաև բառագործածության վարպետություն ու նրբություններ սովորեք: Աղքատիկ բառապաշարը չէ՞ պատճառը, որ մեր շատ

աշակերտների խոսքը ոչ միայն գրագետ չէ, այլև խճողված է օտար բառերով: Հետո չգնանք, ունկնդրենք ձեր խոսքը: Ինչքա՞ն օտար բառեր ենք օգտագործում, օրինակ, տանը. **մտա կուխնի, վերցրի վեդրոն, փակեցի կրանտը, պարավոն սառըն է, ռուչկեն կոտրվեց, սումկես չկա, պադվալում ցուրտ է, պրոստինը փռիր, գարդերոբը փակիր, վիլկան բռնիր, գնա բալկոն, մտիր պադեզդ, կեր սմետան, տվարոգ, տելևիզոր միացրու և այլն, և այլն:**

Ի՞նչ է, չգիտե՞ք այս բառերի հայերեն համարժեքները: Հավատացած ենք՝ շատերը գիտեն, բայց անփույթ են, անուշադիր, անպատասխանատու, սրանք լեզուն չսիրելու, չհարգելու ապացույցներ են: Ոմանք էլ կարծում են, թե օտար բառը գեղեցիկ է հնչում, գրագիտության նշան է: Ոմանք էլ այնքան են վարժվել օտար բառին, որ ամաչում են հայերենը գործածելուց, քանի որ որոշ ընկերներ կարող են ծիծաղել, ձեռ առնել: Ամոթ է այսպես մտածելը: Գիտե՞ք ինչ, եթե համոզված եք, որ ճիշտ եք, ապա չի կարելի տեղի տալ ինչ էլ լինի, ինչպես էլ արածն ու ասածը գնահատեն: Դուք պիտի աշխատեք սխալ մտածողներին համոզել:

Զարմանալի է, չէ՞. մեր բոլոր աշակերտները, երևի առանց բացառության, սիրում են մայրենի լեզուն, բայց շատերը չեն սովորում հայոց լեզու առարկան, հայոց լեզվի դասը: Սա մեզ հանելուկ է թըվում, որի պատասխանը կարող են տալ աշակերտները: Ցանկալի կլիներ, որ «Պիոներ» ամսագիրը տպագրեր աշակերտների կարծիքները, թող նրանք անկեղծ ասեն, թե ինչու չեն սիրում հայոց լեզվի դասը, ինչու լավ չեն սովորում մայրենի լեզուն: Դա կօգնի նաև ուսուցիչներին, կպարզի ճշմարտությունը, կերևա դպրոցականի վերաբերմունքը մայրենի լեզվի նկատմամբ: Մեզ համար դա կարևոր է նաև այն պատճառով, որ լեզու սովորելու ամենալավ, ամենաարդյունավետ տարիները դպրոցականն են: Այս տարիքում մարդը ամեն ինչ լավ է հիշում, լավ է ըմբռնում, ընդօրինակում, շուտ է հասկանում, գլխի ընկնում: Հետևաբար ձեռքից բաց չպիտի թողնել այդ առավելությունը և լեզվի դասը լավ սովորել, ճիշտ գիտակցել, որպեսզի սխալը չտպավորվի, չարմատավորվի, որից հասուն տարիքում հրաժարվելն անչափ դժվար է:

## ՍԵՐՈ ԱՆՏՈՆՅԱՆ

### Հովհ. Շիրազին

Եվ աղյուծաբաշ մռնչում էր նա,
Եվ շանթեր էին ճառագում օրից,
Նա Աբովյանով ամեն երեկո
Բարձրանում էր վեր ու դառնում նորից:
Կապույտի մեջ էր թափառում հոգին,
Առնում էր երազն անհունի ակից,
Անդրանիկից էր նա խոսում հաճախ
Եվ Մամիկոնյան Մեծ Նահատակից:
Նայում էր խորունկ ծեր Արարատին,
Ահազնանում էր, մռնչում էլի...
Ախ, մնացել են լքված ու անտեր
Մեր հողերը թանկ ու երանելի:
Եվ հետո նորից իրանը շտկում,
Թևաբախում էր, սուրում արծվաթույր,
Եվ բախտը կրկին չէր շոյում նրան,
Եվ բախտը նորից անդեմ էր ու կույր:
Տաթևն էր նա մեր, Գլաձորը հին,
Տաճարի պես էր, սրբացած վանքի,
Ու ճերմակ բաշը առել էր ասես
Մասիսին նստած ձյունե սահանքից:
Գնաց հրդեհվող գիսաստղի նման,
Գնաց անհունին նոր իմաստ տալու:
Հավերժականի խուլ բավիղներից
Մեկ էլ ե՞րբ է նա լուսաշխարհ գալու:

### Հայրենի ափ

Գարուն ու մայիս, ծաղկունքոտ կեսօր,
Օդը բուրում է սաղափե հանգեր,
Բլուրի վրա հնամյա մի վանք,
Ու հեկեկացող արծաթե զանգեր:
Ամպերի մոտ է Արագածն ահա,
Կհառնի շուտով և Հայոց Արան,
Կռունկների չուն՝ կապույտի միջով
Հեռացող թախիծ, հեռացող շարան:
Եվ նորից, նորից սուրում ենք առաջ,
Ապարանն անցանք, Քուչակն է շուտով,
Սառնորակ ջրեր, որ աջ ու ձախից,
Գլգլում են պարզ լույս ու կապույտով:
Արայի լեռան շաղոտ փեշերին
Ծաղկունքի ծովն է լուռ ալիք տալիս,
Հավքեր են գնում դեպի Օշական
Եվ Օշականից հավքեր են գալիս:
Եվ օրը նորից բուրում է խաղաղ,
Եվ օդը նորից հյուսում է հանգեր,
Բլուրի վրա հնամյա մի վանք,
Ու հեկեկացող արծաթե զանգեր:

## ՄԻՔԱՅԵԼ ՀՈՎՍԵՓՅԱՆ

### Ջրիկ, տար ինձ

Ջրիկ, տար ինձ, զարթնեմ զվարթ
Օրորոցում նախշուն օրվա:
Մեր շուրթերը՝ դրախտի վարդ,
Լուռ հաղորդվեն լույսին օրհնյալ:

Ես քո խորքում ձուկ եմ փոքրիկ,
Փայլեմ ուրախ՝ հեռու ցավից:
Իմ ստվերը ոսկեգոտի
Կապիր, ջրիկ, մեջքիդ ծավի:

Լույսը քսվի թևերին մեր,
Եվ փետուրներ, մարգարիտներ
Ծողշողան մեր մարմիններին
Այս պահին և հավիտյաններ:

Ապրեմ ազատ ու անանուն:
Ես՝ եղբայրը Աստղի, խոտի:
Էլ տեղ չունեմ ես գնալու՝
Կանաչ շյուղ է կապած ոտիս:

### Նվագ օդի

Իմ մաշկի տակ ծավալվում է
Առավոտը Նավասարդի...
Եվ ծովային իմ ծաղիկը
Ելնում է վեր, որ նավարկի:

Նա աչքերի ստվերներն է
Սրբում ձյունով Արարատի:
Հերկում է իր հայկյան հոգին
Որդան կարմրով ժամանակի:

Ձիլ զրնգում է այրուձին:
Փշրվում են զորք, արալեզ...
Ջորավարի կանաչ կրծքից
Սրի՞նգ է, թե՞ սուր է ելել:

Ջորավարը, ծաղիկն անմեռ
Ծուխ են շնչում, փող եղեգան:
Ծառագում են սպի ու վերք,
Արձակում լույս ու շարական:

Եվ կանգնում է Տաճարը մեր
Հայրենների ալ սյուներին:
Ջորավարը, ծաղիկն անմեռ
Նավարկում են դեպի երկինք:

## ԺԱԿ ՊՐԵՎԵՐ

Թարգմանեց ՍՈՖԻ ԱՎԱԳՅԱՆԸ

# ԲԱԼԱԴՅԱՐ

(Սցենար մուլտիպլիկացիոն կինոնկարի համար)

Նկարները՝ ՄԱՐԻՆԱ ՎԱՂԱ

Լողափ Բրետանում: Հեռվում՝ փարոս:

Հաղթանդամ մի երիտասարդ՝ մաշված հագուստով, ավազի վրա փռված խռմփում է: Դեմքը կեղտոտ է և ահարկու:

Երկու ծովախոզուկներ, նրա բեղերից կախված՝ երգում ու ճոճվում են խռմփոցի ռիթմով: Քնածին շրջապատել են ութ խեցիներ: Մարդը հորանջում է: Հորանջը վարակիչ է, և խեցիները հերթով բացվում են:

Ծովախոզուկներից մեկը ուժեղ ճոճվելով պոկվում է բեղից, օդում աղեղ է գծում և շրմփոցով ընկնում քնածի աչքին: Երիտասարդը ոռնոցով զարթնում է: Վախեցած խեցիներն անմիջապես փակվում են.

Կլյա՛կ

... և թռչում են ծով.

հլյուպ:

Նրանց ետևից՝ ծովախոզուկները:

Երիտասարդը ոտքի կանգնելով կանչում է.

— Բալադյա՛ր: ԲԱԼԱԴՅԱ՜Ր:

Հարևան գյուղի լուսամուտների ապակիները շրխկշրխկոցով թափվում են: Ե-

կեղեցու զանգը ճաք է տալիս...

... Օվկիանոս, նավակ:

Փոքրիկ ԲԱԼԱԴԱՐԸ ձուկ է որսում Մեծ ԲԱԼԱԴԱՐԻ համար... և հանկարծ լսում է նրա սարսափելի վայնասունը, կարթը քաշում, դուրս է բերում մի ձըկնիկ: Սա դեռ շատ փոքրիկ ձկնիկ է, աշակերտական գոգնոցով, գերազանցիկի դեմքով, կրծքին՝ փոքրիկ խաչ: Ձկնիկը տղային խնդրում է բաց թողնել իրեն: Գթաշարժված ԲԱԼԱԴԱՐԸ նրան ծով է նետում, և այդ պահին... լողալով փոքրիկ ԲԱԼԱԴԱՐԻՆ է մոտենում վիթխարի հայր-ձուկը՝ շնորհակալություն հայտնելու: Նա կարճ մորուքով, սերթուկով, բավականին հարգարժան տեսքով ձուկ է: Մոտ են լողում նաև ուրիշ ձկներ և ջըրից դուրս հանելով գլուխները, բարձրացնում են փոքրիկ ԲԱԼԱԴԱՐԻՆ, հասցնում են լողափ: Մեծ ԲԱԼԱԴԱՐԸ, ոլորելով փոքրի ականջը, նրան շպրտում է գյուղի կողմը:

Վրդովված ձկները լուռ դիտում են այդ տեսարանը: Հետո Մեծ ԲԱԼԱԴԱՐԸ ընկնում է փոքրի ետևից:

Մորուքավոր հայր-ձուկը ծովի մեջ քար է նետում, ջրի մակերևույթին գոյանում են օղակներ: Նա վերցնում է երկու օղակ, հեծանիվ է սարքում, ընկնում է Մեծ ԲԱԼԱԴԱՐԻ ետևից:

Մեծ ԲԱԼԱԴԱՐԻ տան մոտ...

Փոքրիկ ԲԱԼԱԴԱՐԸ ընկնում է շան բնի առջև: Նա գրպանից մի կտոր շաքար է հանում: Բնից լսվում է սարսափելի ոռնոց, ապա հայտնվում է մի վիթխարի շոշափուկ, հափշտակում է շաքարը և չքանում: Տղան մտնում է տուն:

Ներսում՝ անկողնախորշ, սեղան, ժամացույց, պատին՝ ծովանկար, կողքին՝ փակ շշով նավակ:

Փոքրիկ ԲԱԼԱԴԱՐԸ նստում, լաց է լինում: Լուսամուտից մի շոշափուկ տղային թաշկինակ է մեկնում:

Մեծ ԲԱԼԱԴԱՐԸ վազում է տան կողմը: Սուլում է: Բնից դուրս է գալիս վիթխարի մի ծովահրեշ՝ վզկապով և շան նըման «ի սպաս» է կանգնում: Մեծ ԲԱԼԱԴԱՐԸ մտնում է տուն, ծովահրեշը՝ ետևից: Մեծ ԲԱԼԱԴԱՐԸ, որ անընդհատ ծամոն է ծամում, ծամոնը թքում է պատին, պլլա՛ք: Հետո բռնում է փոքր ԲԱԼԱԴԱՐԻ ոտքից, նրան շպրտում է նույն ուղղությամբ: Տղան կպչում է պատից:

Ծովահրեշը, մեկնվելով սեղանին, թերթ է կարդում: Մեծ ԲԱԼԱԴԱՐԸ պոկում է «ընթերցողի» շոշափուկներից մեկը, ճիպոտ է սարքում և դրանով ծեծում է խեղճին: Սա կայծակնային արագությամբ բաց է անում երկու տասնյակ շիշ, պարունակությունը լցնում է չանի մեջ, մատուցում է ջարդարարին: Մեծ ԲԱԼԱԴԱՐԸ ցմրուր խմում է ու պառկում մահճակալին և մեռելի նման հարբած քնում է:

Ծովահրեշը դարակից մոմեր է հանում, յուրաքանչյուր շոշափուկով՝ մի մոմ, և հպվելով առաստաղին՝ ջահի նման կախում է մոմերը, ապա լուցկով վառում է:

Բակում փարոսի լույսով հայր-ձուկը պատին սանդուղք է մոտեցնում, բարձրանում է վերև և գրչահատով անցք է բացում պատի մեջ:

Իսկ նկարի վրա ծփում է ծովը, իսկական փոթորիկ է սկսվում, ուժեղ ալիքը խփում է փոքրիկ ԲԱԼԱԴԱՐԻՆ, և նա, պատից պոկվելով, ընկնում է հատակին:

Տղան նայում է նկարին. հարգարժան հայր-ձուկը անցնելով նկարի շրջանակից, բարեկամաբար ողջունում է իրեն:

Ջուրը նկարից դուրս հորդելով, հեղեղում է սենյակը:

Ծովահրեշը ժպտալով հայր-ձկանն է մեկնում խցանահանը: Սա բացում է նավակով շիշը: Նավակն արթնանում է, դուրս է գալիս շշից և շրջանաձև լողում է սենյակում: Անձնակազմի անդամները ինչ-որ բան բղավելով թափահարում են բերետները:

Դուռը բացվում է: Կատաղի հեղեղը դուրս է թափվում, հետը տանելով փոքրիկ ԲԱԼԱԴԱՐԻՆ, ժամացույցը, նավակը, որ աստիճանաբար մեծանում է և, լուսավորվելով փարոսի և ծովաստղերի լույսով, լողում է դեպի ծով:

Մեծ ԲԱԼԱԴԱՐԸ մրսելուց զարթնում է, տեսնում է, որ տունը դատարկվել է, բարկացած պատից քաշում է պարկապզուկը, դուրս է գալիս: Լուսնյակ գիշեր: Միայնակ լողափին կանգնած, նա մե՛րթ կատաղի, մե՛րթ տխուր նվագում է:

Բայց հեռվից լսվում է մի ուրիշ մեղեդի, որ խլացնում է այս թախծալի հընչյունները: Մեծ ԲԱԼԱԴԱՐԸ ուզում է ավելի բարձր նվագել, վիզը ուռչում է, մի երակ է պայթում: Նա պարկապզուկը մի կողմ է դնում, երակը կապում է:

Օտար մեղեդին ավելի ու ավելի բարձր է հնչում:

Հեռու-հեռվում, շոտլանդական ափում մի շոտլանդացի պարկապզուկ է նվագում:



Նվագողի կողքին նստած են երեք խիստ երաժշտասեր շներ և երգում են տակտով. ուու, ուու, ուու... Շոտլանդացին լըսում է ԲԱԼԱԴԱՐԻ նվագը, բարկանում է և կռանում, քար է վերցնում:

Նույն միտքը ծագում է նաև ԲԱԼԱԴԱՐԻ գլխում:

Ամեն մեկը շպրտում է իր քարը... Երկու քար ծովի վրա: Քարերը հանդիպում են իրար, ողջունում են. մեկը՝ ֆրանսերեն, մյուսը՝ շոտլանդերեն և շարունակում են ճանապարհը:

Քարերից մեկը դիպչում է ամպին, որի վրա ծուլորեն թեք ընկած հրեշտակը քնար է նվագում: Ամպը ամքում, իջնում է ցած:

Ծովի խորքում զբոսնող մի ձուկ նկատելով ամպը, ընկերոջն ասում է. «Ինձ թվում է անձրև է գալու»: Ձկները բարձրացնում են վերնազգեստի օձիքները և արագ չքանում:

Մեծ ԲԱԼԱԴԱՐԻ քարը հասնում է Շոտլանդիա, դիպչում է պարկապզուկ նվագողի ուղիղ ճակատին և մեռցնում նրան:

Իսկ շոտլանդացու նետած քարը դիպչում է ԲԱԼԱԴԱՐԻ պարկապզուկին, ետ է թռչում և... ուղիղ երկինք բարձրացող հրեշտակի աչքին... Հրեշտակի ձեռքից ընկնում է քնարը:

Կետը երախով բռնում է քնարը: Քնարը մնում է կետի կոկորդում: Այդ պահին կետի որովայնում բանտված փոքրիկ, չքնաղ ջրահարսը վեր է կենում ջրիմուռներից կազմված իր անկողնուց և հուսահատ դիպչում է քնարի լարերին:

Երաժշտություն:

Զարմացած, հիացած ջրահարսը նըվագում է զմայլելի և թախծոտ մի եղանակ, որը հանկարծ ընդհատվում է շոտլանդացու շների ոռնոցով:

Կետը չքանում է:

Հայտնվում է հրեշտակը (աչքը վիրակապված), նրա ետևից երկու սպասավոր-հրեշտակներ՝ պատգարակով: Նրանք շոտլանդացուն դնում են պատգարակի վրա և թռչում են երկինք:

Շների ոռնոցը դադարում է:

Լողափում Մեծ ԲԱԼԱԴԱՐԸ նորից է ուզում նվագել, բայց նրա միապաղաղ, տհաճ նվագից զզված պարկապզուկը որոշում է ինքը նվագել ԲԱԼԱԴԱՐԻ վրա: Այսինքն՝ գրկում է ԲԱԼԱԴԱՐԻՆ և նրա ականջին հնչյուններ է փչում: ԲԱԼԱԴԱՐԸ փքվում, փքվում է և տեղնուտեղը օդ է բարձրանում մեղեդու հետ, իսկ գոհ պարկապզուկը վազում է ազգականների մոտ, պատմելու իր սխրանքի մասին:

Պարկապզուկները շատ են ուրախանում: Նրանք փոքրիկ համերգ են տալիս: Եղբայրանում են ձկների հետ, և ամեն մեկն իր երգն է երգում:

Հետո ձկները պարկապզուկների հրամանատարությամբ գրոհով վերցնում են քաղաքը:

Եվ ամեն մեկն իր համար տեղ է գըտ-



նում. աղոցաձուկը և թրաձուկը՝ ատաղձագործի մոտ, կատվաձուկը՝ սափրիչի մոտ, օմարը՝ ծխախոտի կրպակում:

Ջկան պահածոյի լքված գործարանի վրա հայտնվում է ցուցանակ— Թանգարան: Ջկներն այստեղ են գալիս հիանալու դատարկ տուփերով, ինչպես Լուվրում կհիանային սարկոֆագներով:

Երջանիկ ծովահրեշը տանտիրոջ նրման տեղավորվել է տներից մեկում: Մի շոշափուկով ջուր է լցնում ծորակից, մյուսով սափրվում է... փարոսից ծխամորճն է կպցնում:

Հեռու օվկիանոսում փոքրիկ ԲԱԼԱԴԱՐԸ նավապետի գլխարկով ետ ու առաջ է անում նավի կամրջակին և հրամաններ է տալիս հետևակայինի համազգեստով ծովային-պինգվիններին:

Հանկարծ փոքրիկ ԲԱԼԱԴԱՐԸ գլուխը վեր է բարձրացնում և բղավում է. «հայրի՜կ»:

Պայթելու աստիճան փքված Մեծ ԲԱԼԱԴԱՐԸ հուսահատ շարժումներ անելով թռչում է նավի վրայով: Պինգվինները շպրտում են իրենց զենքերը, փախչում են (թնաբախումների աղմուկ և պի՜նգվինների հետևից վազող հրացանների թըխկթըխկոց):

Մեծ ԲԱԼԱԴԱՐԸ ճանկում է նավը:

Ահաբեկված տղան նետվում է ծովը և կառչում կետի պոչից, որի վրա արդեն տեղ էր գրավել թռչող ձուկը: Տղան բարևում է նրան: Այդ պահին լսում է...անսահման տխուր, հավայական գեղեցիկ երգի նմանվող մի մեղեդի:

Թռչող ձուկը գիտակի նման ծպպացնում է լեզուն և փոքրիկ ԲԱԼԱԴԱՐԻՆ գրկում, քաղաքավարությամբ բերում է գերված ջրահարսի մոտ: Ջրահարսին դուր գալու համար փոքրիկ ԲԱԼԱԴԱՐԸ խաղաթղթերով ֆոկուսներ է ցույց տալիս, իսկ կետը քրքջում է արտասվելու աստիճան: Դրա հետևանքով քնարի լարերը ծովում են, ջրահարսը ազատվում, դուրս է գալիս, կետի բերանից: ԲԱԼԱԴԱՐԸ բռնում է նրա ձեռքից, իսկ թռչող ձուկը նրանց տեղափոխում է կետի մեջքին:

Իդիլիա:

Ջրահարսը երգում է: Կետի արտանետած ջրում թռչող ձուկը ձու է դնում, ապա թռչում գնում է: Քիչ հետո վերադառնում է մի փոքրիկ հրացանով:

ԲԱԼԱԴԱՐԸ կրակում է ձվի վրա, էլի է կրակում: Ձուն կոտրվում է, նրա միջից դուրս է ցատկում մի թռչող ձկնիկ, սա նույնպես ձու է ածում: Կրակոց: Հայտնվում է մի ուրիշ թռչող ձկնիկ, որը իր հերթին ձու է ածում և... այդպես բավական ժամանակ:

Իսկական փոքրիկ հրավառություն և տոնախմբությանը եկած կետերի պար:

Երջանկությունից գլուխը կորցրած ԲԱԼԱԴԱՐԸ կոտրում է հրացանը. տրա՛ք, քնքշորեն գրկում է ջրահարսին, բռնում է թռչող ձկնիկին և երիցուկի թերթիկ-



ների նման պոկում է նրա թեփուկները:

Դժբախտ, բայց հավատարիմ ու անտրտունջ ձկնիկը միապաղաղ ձայնով հաշվում է.

«Սիրում է, չի սիրում, սրտին է սեղմում»:

Այդպես նրանք կետի մեջքին լողում են դեպի հայրենի գյուղը: Գյուղի ափին կետը նրանց իջեցնում է:

Պարկապզուկներն ու ձկները հրճվանքի մեջ են:

Երեկոյան, տան պատշգամբում ջրահարսը երգում է: Ամբողջ գյուղը հավաքվել է լսելու նրան:

Որոշ տեղերում թեփուկահան եղած թռչող ձուկը թուղթ է խաղում ծովահրեշի հետ:

Իջնում է գիշերը: Գաղտագողի գյուղին է մոտենում նավը, ափ է ցատկում Մեծ ԲԱԼԱԴԱՐԸ՝ երկու նողկալի տիպերի ուղեկցությամբ: Նրանց գլխարկների վրա երկուական անցքեր կան՝ կոտոշների համար (նրանք նման են ոստիկաններին, բայց չորքոտանի են): Խավարի մեջ փսփսալով մտնում են տուն:

Թռչող ձուկը թաքնվելով սպիտակեղենի բաքի մեջ, գլուխը հանում, ականջ է դնում:

Գիշեր:

Երեք չարագուշակ տիպեր բռնում են ջրահարսին և փոքրիկ ԲԱԼԱԴԱՐԻՆ, հարձակվում են տան մյուս բնակիչների վրա (գործելով օրենքի անունից):

Վաղ առավոտ է: Դժբախտ ջրահարսը շղթայակապ նստած է ձկնապահածոյի գործարանի նկուղում, որի դռները կրնկի վրա բաց են: Մեծ ԲԱԼԱԴԱՐԸ ամեն կերպ աճաբեկում է նրան, ստիպելով երգել:

Ջրահարսը երգում է: Ավելի շուտ հեկեկում է:

Բոլոր ձկներն արթնանում են և գըլխարկները դնելով, կախարդվածի նման վազում են գործարան:

Հենց ներս են մտնում, դռները փակվում են, վերակացուները հարձակվում են նրանց վրա և փակում սարդինի պահածոյի տուփերի մեջ:

Մյուս թշվառներին ստիպում են ոտկաններ հյուսել, կարթեր ու սանրեր սարքել դժբախտ ծովային կրիաներից, որոնք զրկվելով իրենց զրահներից, ցրտից դողում են:

Գործարանի մուտքի մոտ նստած է մեծ ԲԱԼԱԴԱՐԸ և հաճույքով ծխում է հաստ սիգարը:

Պահատնակում նստած է պահակը:

Մոտենում է հուղարկավորության թափորը:

Սարդինի թաղումն է (փոքրիկ թիթեղյա դիակառք): Դիակառքի ետևից, որ քաշում են երկու ձիաձուկ, պարկապզուկը սգո քայլերգ է նվագում: Ետևից գալիս է սգավոր ընտանիքը:

Մեծ ԲԱԼԱԴԱՐԸ բարձրաձայն հռհռում է և հեգնական հայացքով նրանց



ետևից ուղարկում է ծխի երկու օղակ, որոնք կպչում են դիակառքից:

Ջկները վրդովվում են:

Ծովահրեշը դուրս է գալիս քնից, իր գոգնոցը հանձնում է Մեծ ԲԱԼԱԴԱՐԻՆ և հպարտ հեռանում է:

Հուղարկավորության թափորը շարունակում է ճամփան, բարձրանում է փոքրիկ բլրակը, ձիաձկները հոգնել են: Հանգուցյալը դուրս է գալիս իր թիթեղյա տուփից և սիրալիր կերպով հրում է դիակառքը: Ընտանիքը ծափահարում է:

Ջկների մեջ հասունանում է խռովությունը:

Մեծ ԲԱԼԱԴԱՐԸ բարիկադ է սարքում և օգնական ուժ է խնդրում:

Հայտնվում են զորամասեր, կոտոշավոր չորքոտանիներ:

Գերված ջրահարսին առաջվա նման հսկում է վերակացուն: Ջրահարսը տխուր նայում է մեծ շղթայով պատին գամված փոքրիկ ԲԱԼԱԴԱՐԻՆ:

Լուսամուտի ետևում մեկը սուլում է:

Վերակացուն գլուխը հանում է վանդակորմից. թռչող ձուկը դրսից կապում է նրա կոտոշները: Հայտնվում է էլեկտրավոր կատվաձուկը, խփում է վերակացուի գլխին: Ամեն հարվածի հետ ավազակի աչքերը վերածվում են թարթվող էլեկտրական լամպերի:

Փարոսը համոզվելով, որ նկատել է համախոհի, տալիս է պատասխան ազդանշան, հանելով գլխարկը, որի լայն եզրերը ոչ այլ ինչ են, եթե ոչ եզրապատեր, որին կառչել է փարոսի վերակացուն, վախից աղիողորմ ճչալով:

Արտակարգ նրբակիրթ կատվաձուկը խոնարհվում է ջրահարսի առջև, գրպանից ժամացույց է հանում:

Ջը՜նգ— և շղթան, որով կապված էին գերիները, արագ միանում է ժամացույցին, ապա թռչում է կատվաձկան բաճկոնակի գրպանը:

Ազատագրված ջրահարսը ապստամբության կոչ է անում, փոքրիկ ԲԱԼԱԴԱՐԸ ապստամբներին տանում է իր ետևից...

... Եվ խռովությունն սկսվում է:

Մելանաձկների պաշտպանության տակ, որոնք թանաքե ամպեր են արձակում, մրճաձուկը կոտրում է պահածոյի գործարանի դուռը:

Ծովահրեշը օղապարան է նետում վերահսկիչների վրա:

Սարդին-բուժքույրերը խնամում են վիրավորներին, տամպոն-ծծողականով վերակենդանացնում են նրանց, ում դժբախտաբար դիպել է մելանաձկների թանաքը, և նրանք նորից ձեռք են բերում նախկին գույները:

Պահածոյի գործարանում օմարները չանչերով բացում են տուփերը, ազատագրում իրենց փոքրիկ ցեղակիցներին: Ծովահրեշը բանտապետից խլում է սարդինի պահածոյատուփերի բանալին և շշափուկի մի շարժումով բաց է անում:

Ազատագրված սարդիների, օմարների, տառեխների երգչախումբ:

Փողոցում կարգապահպան ուժերը Մեծ ԲԱԼԱԴԱՐԻ գլխավորությամբ, վախից՝ ոստիկան-ցուլի ետնաբաշից կառչած, փախչում են:

Թռչող ձուկը ճանկում է մի օձաձուկ, ընկնում է նրանց ետևից: Թռչում է փախըստականների գլխավերևով, անցնում է նրանցից, ճախրելով փարոսի մոտերքում, օձաձկան սրնգի նման մոտեցնում է շուրթերին, սկսում է նվագել:

Փարոսը, որ ոչ այլ ինչ էր, քան ծովային օձ (կարելի էր. սպասել), դյութված օրորում է գլուխը, ապա խլացուցիչ աղմուկով դուրս ցատկելով ջրից, սլանում է թռչող ձկան ետևից և հասնելով փախըստականներին, անհուն բավականությամբ կուլ է տալիս Մեծ ԲԱԼԱԴԱՐԻՆ ու կրճղակավոր ոստիկաններին, դուրս է թըքում նրանց խթանները և նորից աղմուկով շրմփում է ծովի մեջ:

# ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՄԱԶԳԵՍՏ

*Արձագանքում են տպագրվածին*

Սիրելի խմբագրություն, վերջերս «Պիոներ» ամսագրի համարներից մեկում կարդացի աշակերտների կարծիքները դպրոցական համազգեստի մասին: Աշակերտների մեծ մասը չի ցանկանում կրել միատեսակ դպրոցական համազգեստ և առաջարկում է հագնվելու ազատություն տալ դպրոցականին: Ես միանգամայն այլ բան եմ մտածում: Պատկերացնո՞ւմ եք, թե ինչ կկատարվի դպրոցներում: Ամբողջ դպրոցը կամ դասարանը կբաժանվի «հագնվողների» և «չհագնվողների» երկու բանակի: Չէ՞ որ աշակերտներից ոմանք հնարավորություն ունեն լավ հագնվելու, մյուսները՝ չունեն, և չունեցողի մեջ վատ հագնվելու պատճառով թերարժեքություն է առաջանում:

Դպրոցական համազգեստը հագնում ենք միայն դպրոցում, և այն էլ 10 տարի, իսկ ամենօրյա հագուստ կարող ենք հագնել միշտ: Աշակերտները դպրոցական համազգեստով ավելի գեղեցիկ են երևում և, իմ կարծիքով, դպրոցական համազգեստից ավելի գեղեցիկն ու հարմարը չկա: Խնդրում եմ աշակերտներին չտալ հագնվելու ազատություն:

ԱՆԱՀԻՏ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ
Երևան, № 103 միջնակարգ դպրոցի աշակերտուհի

Սիրելի խմբագրություն, ձեզ նամակ եմ գրում առաջին անգամ, բայց «Պիոներ» ամսագրի մշտական ընթերցողներից մեկն եմ:

Ես ամսագրի 1989 թ. հինգերորդ համարում կարդացի դպրոցական համազգեստի մասին կայացած խոսակցությունը: Եվ շատ կուզենայի իմ կարծիքը ֆիզմաթ դպրոցի աշակերտների նման հայտնել խմբագրությանը:

Սիրելի խմբագրություն, ի միջի այլոց, պետք է բոլոր դպրոցականները միասին որոշեն, թե ինչ պետք է հագնել դպրոցում և ինչպես: Եվ ես առաջարկում եմ (իհարկե, եթե համամիտ եք ինձ հետ), որպեսզի դպրոցականները նամակներով արձագանքեն խմբագրությանը, հայտնեն իրենց կարծիքները այս կարևոր հարցի շուրջ:

Շուտով կավարտվի այս ուսումնական տարին, մի՞թե նոր ուսումնական տարում ևս պետք է կրենք այս խղճուկ, գորշ և միաժամանակ ոչ ժամանակակից հագուստը:

ՄԱԳԴԱ ԽԱՉԱՏՐՅԱՆ
Սևանի շրջան, գ. Լճաշեն, 8-րդ դաս.



# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

Ձմեռ պապ եմ նկարել
Ու տոնածառ զարդարված,
Նվերների պարկը մեծ
Ու մանուկներ պար բռնած:
Ձմուշկներ եմ շատ սիրում,
Ձմուշկներ եմ նկարել,
Ես հանդեսին կպարեմ,
Կնվագեմ, կերգեմ,
Երբ հանդեսը վերջանա,
Ձմուշկները երազած
Ձմեռ պապը ինձ կտա:

Այս Նոր տարի, իմ Լիլիթ,
Արի թխենք մի բլիթ,—
Ձմեռ պապը մեզ հյուր գա՝
Մեր սեղանին բլիթ կա:
Նա մեզ կտա նվերներ,
Իսկ մենք նրան՝ բլիթներ,
Ջան կասենք ու կլսենք,
Ձմեռ պապին կճամփենք,
Եվ նոր տարին մեզ համար
Կլինի վառ տոնածառ:

## Աստղիկները

Իրիկվա երկինքն եմ սիրում աստղավառ,
Բայց երկինքը ծովի պես ալեկոծվել,
փոթորկվել է,—
Մոլորվել են աստղիկները,
Ման են գալիս լուսնի շուրջը:
Գնամ, նրանց լույսը փնջեմ
Ծաղկեփունջը մեր տուն բերեմ:

ՆԱՐԻՆԵ ՔԵՐՈԲՅԱՆ
գ. Արթիկ, № 2 միջն. դպրոց

## Ինչպես բացատրեմ

Ուզում եմ գրել սիրո մասին մի բան,
Բայց, գիտեմ, կաղավաղեմ թվերի նման,
Դրա համար սերս մտքումս պահեմ,
Թե չէ բոլորը վրաս կծիծաղեն:

Բայց ինչո՞ւ սերս չբացատրեմ,
Միգուցե ստացվի, պատահում է, չէ՞,
Աստված վերևում, մենք էլ ներքևում,
Աստված վկա, ոնց որ ստացվեց,
Բայց մի քիչ էլ աղավաղվեց:

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՀՈՎՈՅԱՆ

Մասիս, եթերված ողջ Հայաստանում,
Ցավոք, ապրում ես դու երկրում օտար,
Ամեն օր քեզնից ողջույն եմ առնում,
Ողջույն եմ առնում անմոռաց, անմար:

Քո այդ ողջույնը հիշեցնում է ինձ
Կարոտից հանգած վանեցի պապիս,
Նրա հին երկրում Մասիսն էր ձախից,
Իսկ իր աջ կողմում շողշողում էր Սիս:

ՏՈՐՔ ԴԱԼԱԼՅԱՆ
Երևան, № 18 դպրոց

## Աշուն

Աշունը եկավ
Հազար բարիքով,
Մարդուն խոստացած
Պարտք ու տալիքով:

Աշունը եկավ
Ամպ ու մշուշով,
Նախշած ու ներկած
Շրթունք ու թշով:

Աշունն ի՞նչ գիտեր,
Որ իր հին ճամփով
Եղբայրն էր գալու
Ճերմակ մորուքով:

## Մայրիկիս

Թե աշխարհ ասեմ,
Ախ, աշխարհն ի՞նչ է,
Աշխարհից էլ մեծ
Քո մաքուր խիղճն է:

Թե երկինք ասեմ,
Չէ, երկինքն ի՞նչ է,
Քո արև հոգին
Երկնքից ջինջ է:

Թե աստված ասեմ,
Աստվածն ինձ անտես,
Չէ՞ որ աստծու
Աստվածն էլ դու ես:

ԵՐԱՆՈՒՀԻ ԵՐԵՄՅԱՆ

## Ասա, ինչո՞ւ վշտացրիր, հող իմ

Դարեր ու դարեր տառապել ենք մենք,
Թիվ ու վերջ չունեն մեր կորուստները,
Մեր վաղնջական հողն ենք կորցրել,
Ծվարել վերջին հողակտորին:

Դու, որ եղել ես իմ նախնյաց հողը,
Դու, որ եղել ես հայիս ծնողը,
Դու, որ եղել ես նրան սնողը,
Ասա, ինչո՞ւ վշտացրիր նրան, հող իմ:
Ասա, ինչո՞ւ ցնցվեցիր, ինչո՞ւ ավերեցիր
Հումորաշատ Գյումրին ու լուսե Սպիտակը,
Ինչո՞ւ մարդկանց ողջ-ողջ թաղեցիր...
Ասա, ինչո՞ւ վշտացրիր, հող իմ:

ՄԻՍԱԿ ԹՈՐՈՍՅԱՆ
Վրաց. ԽՍՀ, Ախալքալաք, գ. Խանդո,
11-րդ դասարան

ԱՐԹՈՒՐ ԹՈՐՈՍՅԱՆ, 18 տ.
Երևան

**ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ**

# Գայլի խոստովանությունը

Ծերացել էր գայլը, աչքերը լավ չէին տեսնում, ոտքերը թուլացել էին: Եվ ահա մի գիշեր, որջում պառկած, սկսեց մտածել մահվան մասին: Մեղքերը շատ էին, և վախենում էր, որ մահանալուց հետո դժոխք կընկնի: Մութ էր որջում, խոնավ ու ցուրտ, և գայլը հուսահատությունից սկսեց ոռնալ երկար ու աղիողորմ: Լսել էր, որ մարդիկ, խոստովանելով, իրենց մեղքերին թողություն են ստանում: Բայց որտե՞ղ պիտի խոստովաներ, ո՞ւմ մոտ՝ չգիտեր: Էլ վաղվան չթողեց, ելավ որջից:

Լուսինը սահում էր մռայլ ամպերի ետևում: Մութ անտառում դեմ ընկավ ծեր գայլը, դեն ընկավ ու պատահաբար դիպավ թփերի տակ քնած նապաստակին:

— Ա՜, ճանկս ընկար...,— շլդիկին ականջներից բռնած բարձրացրեց գայլը, և մարած աչքերը հրճվանքից կայծկլտացին: Պատրաստվում էր ուտել [illegible] փից համարյա ուշագնաց նապաստ[illegible], երբ հիշեց մեղքերի թողության մասին: «Սպասիր,— մտածեց,— գուցե սրան աստված է ուղարկել, որպեսզի խոստովանեմ մեղքերս...»:

— Լսիր, շլդիկ,— ասաց նապաստակին,— ես քեզ պիտի խոստովանեմ մեղքերս, և դու ինձ թողություն պիտի շնորհես...:

—Ե՞ս... Ես ինչպե՞ս... Ես հո քահանա չեմ, որ մեղքերիդ թողություն տամ...— ասաց նապաստակը:— Պիտի քահանային խոստովանես...

— Շնորհակալ եմ խորհուրդիդ համար,— ասաց գայլը,— կգնամ քահանայի մոտ: Բայց... քեզ ի՞նչ անեմ:

— Արձակիր գնամ,— ասաց նապաստակը,— մեղքերդ մի ծանրացրու:

«Եթե ես սրան բաց թողնեմ,— մտածեց գայլը,— քաղցից շուտով հոգիս պիտի փչեմ: Էհ, ի՞նչ տարբերություն, մեղքերս մեկով ավելի լինեն, թե պակաս...»:

Եվ կերավ շլդիկին: Կերավ, կշտացավ, շփեց փորը, որպեսզի լավ մարսի, և ճանապարհ ընկավ դեպի գյուղը, քահանայի տունը: Գնում էր, գնում էր, և շունչը կտրվում էր, կանգ էր առնում, շունչ քաշում ու նորից ճամփան շարունակում: Վերջապես հասավ գյուղի ծայրը և թակեց քահանայի դուռը:

Քահանան արել էր երեկոյան աղոթքը, կուշտ կերել էր ու հանգիստ խղճով քնած էր խոր քնով: Արթնացավ, վառեց ճրագը, լուսամուտից դուրս նայեց և տեսավ գայլին:

— Ի՞նչ կա, գայլ, այս ուշ ժամին,— հարցրեց:

— Եկել եմ մեղքերս խոստովանեմ, տեր հայր,— ասաց գայլը:

Քահանան հազիվ փարաջան, փնտրեց, [illegible]ավ խաչը, կախեց կրծքին, բաց արեց [illegible]ը, գայլին ներս հրավիրեց...

Գայլը ներս եկավ, նայեց շուրջը, հոտոտեց օդը.

— Այստեղ տաք է ու չոր և ախորժալի բուրում է...:

— Այո, ապրում ենք մարդավարի և ոչ թե գազանաբար...,— ոչ առանց հպարտության ասաց քահանան:

— Իմ որջը մութ է ու խոնավ, և այնտեղ իմ գլուխը ոչ մի բարի միտք չի գալիս... Այս աշխարհում կյանքս մի բանի նման չէր, գուցե այն աշխարհում ուրախանամ... Օգնիր, տեր հայր,— աղաչեց գայլը:

Քահանան հարդարեց մորուքը, խաչակնքեց գայլին.

— Պատմիր տեսնենք:

— Ի՞նչ պատմեմ,— սկսեց գայլը,—լեզուս չի պտտվում, տեր հայր... Անցած ամռանը գետափին մի եղնիկի ձագ հանդիպեց ինձ,.. և թեև կուշտ էի, բայց սովորությանս հպմաձայն պատպռոտեցի ու



Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

կերա...։

— Լավ չես արել, անպիտան գազան, հոգուդ մեղք ես արել,— ասաց քահանան։

— Այս աշնանը անտառի խորքում մի կիտար պատահեց, պատառոտեցի կերա,— շարունակեց գայլը,— շատ էի քաղցած և ախորժակս հրամայաբար պահանջում էր...։

— Կիտարը աստված է ուղարկել, որպեսզի քաղցդ հագեցնես...,— ասաց քահանան։

— Ձմռան մի գիշեր, քո գառն եմ տարել որջս և պատառոտելով անուշ արել, տեր հայր...,— ոգևորվեց գայլը։

— Լավ չես արել, բկիդ կանգներ,—ասաց քահանան։

— Եվ տանուտերի մի ոչխարը...

— Լավ ես արել, օրհնյալ,— ասաց քահանան։

— Եվ այրի Մարանի այծը...

— Թշվառ կնոջ վերջին հույսն ես կտրել, անիրավ,— ասաց քահանան։

Այստեղ գայլը այնպես զգացվեց, որ լեզուն փաթ ընկավ և չկարողացավ շարունակել։

— Մի վշտացիր, օրհնյալ,— ասաց քահանան,— աստված մեծ է, կների։

Քահանան ձանձրացել էր մենակ մնալուց և աշխարհի գործերի մասին մտածելուց։ Իջավ մառանը, գինի բերեց, սեղանին դրեց ինչ ուներ և գայլին հրավիրեց նստելու։ Սկսեցին ուտել ու խմել։ Բուխարիկում վառվում էր կրակը, ճրագը լուսավորում էր շուրջը։ Խրճիթում տաք էր, և սեղանը՝ բարիքով լիքը։

— Էհ... հառաչեց գայլը,— ճար լիներ, մի այսպիսի խրճիթ կսարքեի, հավ

ու ճիվ կպահեի, կապրեի մարդավարի...:

— Միայն ազնիվ տքնությա՛մբ, օրհնյալ...,— մատը բարձրացրեց քահանան:

— Ամբողջ կյանքում միայն չարիք եմ պատճառել... Ոչ ոք ինձանից բարիք չի տեսել... Ի՞նչ կենդանի եմ ես... գազան եմ...,— և գայլը հուզմունքից փղձկաց և սկսեց լաց լինել:

— Մի հուսահատվիր, օրհնյալ,—սփոփեց քահանան,— դարձի գալը երբեք էլ ուշ չէ...:

Գայլը սրբեց արցունքները, խոր ախ քաշեց և անկեղծորեն ասաց.

— Վերջ, տեր հայր, այլևս վերջ... Սրանից հետո պիտի ապրեմ ազնիվ աշխատանքով, սեփական քրտինքով...:

Խմեցին ևս մի երկու բաժակ, գայլի սիրտը բոլորովին փափկեց, և նա սկսեց լաց լինել.

— Ախր ես բարի գայլ եմ, լավ գայլ եմ...:

Քահանան այս խոսքերից այնքան ըզգացվեց, որ ինքն էլ սկսեց լաց լինել: Գրկել էին իրար քահանան ու գայլը և հեկեկալով իրար անուշ խոսքեր էին ասում...

— Է՛հ... Ի՞նչ լավ է կյանքը, ի՞նչ լավ է ապրելը...,— ներշնչված բացականչեց գայլը:

Կերան, խմեցին, զրուցեցին բավական, մինչև վաղ առավոտ, երբ արևելքը սկըսեց շառագունել, և պայծառ շողաց լուսաստղը:

— Է՛հ...— հառաչեց գայլը,— կերանք, խմեցինք, լավ էր քեզ մոտ, տեր հայր, շնորհակալ եմ, բայց ժամանակը եկավ... ես պիտի գնամ, թե չէ շուտով գյուղի շըները կարթնանան և նրանցից պրծում չի լինի:

— Գնա, օրհնյալ, ապրիր հանգիստ խղճով, անկեղծ խոստովանությունդ աստված պիտի ընդունի,— ասաց. քահանան:

— Հոգով պիտի պարտական մնամ,— հուզմունքը չկարողացավ զսպել գայլը: Հրաժեշտ տվին իրար, և գայլը գնաց:

Մինչև արևի ծագելը դեռ բավական ժամանակ կար, քահանան գիշերը չէր քընել, որոշեց մի քիչ հանգստանալ, թինկն տվեց բարձին և, որովհետև բարի գործ էր կատարել, անմիջապես քնեց:

Առավոտյան, երբ քահանան մտավ գոմ ոչխարներին հանելու, տեսավ գառներից մեկը չկար: Գայլը գնալուց հետը տարել էր:



**Այս խիստ վտանգավոր գազանի արյունարբու կրքերը մեղմելու համար մեր նախնիք սիրաշահել են նրան, զոհեր են մատուցել և պաշտել են երբեմն հզոր աստվածներին հավասար: Այդ պաշտամունքը հաստատված է Խարրի-Միտանի երբեմնի պետության կենտրոններում կատարված պեղումներով: Իսկ այդ պետությունը մի ժամանակ ընդգրկում էր հետագայի Մեծ Հայքը:**

**Այդ պաշտամունքը կար նաև Անդըրկովկասի նախաբնիկների մեջ, մանավանդ երկրի այն մասերում, ուր այդ գազանն ահ ու սարսափի մեջ էր պահում մեր նախնիներին: Այդ երկրներից է Արցախը: Այստեղ կատարած իր պեղումներով Ե. Ռոսլերը վերջնականապես հաստատեց հովազապաշտությունը Արցախի նախաբնիկների մեջ:**

**Կարծում եմ՝ պաշտամունքի հետ են առնչվում նաև հովազի ժայռապատկերները՝ գտնված Սյունիքի լեռներում: Այդտեղ մարդը շատ հազարամյակներ սըրանից առաջ ժայռերի վրա հովազներ է փորագրել: Այս նկարներից պարզ երևում է, որ Սյունիքի նախնադարյան բնակիչը շատ մոտիկից ծանոթ էր այս գազանին: Դա երևում է նրանից, որ հովազի պատկերն այստեղ կերտված է զարմանալի ճշգրտությամբ, իրեն բնորոշ կեցվածքով: Տեսեք, վերի հովազները ընթանում են լեռն ի վեր, հանգիստ, անշտապ, իսկ ներքինը վտանգ է զգում դիմացը, ուստի մի փոքր ետ է ընկրկել, լարվել, քարացել և գլուխը կախ, սրված հայացքով պատրաստվում է դիմագրավելու վտանգը: Համակ զայրույթ և չարություն է արտահայտում այդ նկարը՝ այսինքն, ամենից բնորոշը այդ կենդանու համար:**

**Հետագա դարերում հովազը զանազան առիթներով մտել է մեր քանդակագործության մեջ՝ մերթ որպես տոտեմիզմի մնացորդ, մերթ որպես Հայաստանի բընության փառնայի չար և ահարկու, բայց և գեղատեսիլ ներկայացուցիչ: Նայենք, օրինակ, մեր առաջին մայրաքաղաքներից Դվինի միջնաբերդի շենքերից մեկը: Նրա մի խորշը եզերված է գիպսե բարձրանկարներով: Կաղապարով թափված այդ ուռուցիկ նկարները իրենցից ներկայացնում են հովազների վազք (21 հովազ): Եվ ի՞նչ հովազներ, ի՞նչ վազք: Սա ուղղակի արվեստի գլուխգործոց է: Այստեղ ակնհայտ է այդ գազանի մեծա-**

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ
(«Հայաստանի կենդանական աշխարհը»
աշխատությունից)



Հատված փորագրազարդ գրքակալից,
1273 թվական

# ՀՈՎԱԶԸ ԵՎ ԱՀԱՐԿՈՒ Է, ԵՎ ԳԵՂԵՑԻԿ

րանքը մեր նախնիների կողմից:

Հայ մարդու համար նորություն չեն եղել հովազի արյունոտ գործերը առանձնապես այն ժայռերում, ուր քարայծերն են բնակվել: Նման մի տեսարան քանդակված է Անիի բազմաթիվ եկեղեցիներից մեկի պատին. հովազը մեծ-մեծ թռիչքներով հասել է խելակորույս փախչող նոխազի հետևից և ահա կցատկի ու ճիրանները կխրի զոհի ծոծրակը...

Նենգ և արյունարբու գազան լինելով, ավելի ուշ հովազը առաջ է բերել մեր ժողովրդի հակակրանքն իր նկատմամբ և, պետք է, որ նրա կողմից դասված լինի չար ուժերի շարքը: Իսկ քրիստոնեությունը չար ուժերին հակադրում էր իր խորհրդանիշը՝ խաչը: Այդ բանը մենք հիշեցինք միջնադարյան մի նկար նայելիս: Կարծում ենք հենց չարը պատժելու երևույթն է պատկերված Ջերմաձորում 1417 թվականին Աստվածատուր աբեղայի ձեռքով նկարված այդ նկարում. զույգ հովազները գամված են իրար մի մեծ խաչով: Մենք կարծում ենք, որ սա խաչի զորությամբ չարը հաղթահարելու տեսարան է: Քրիստոնեության խորհրդանիշ խաչը այդ գազաններին այնպես է մեջքմեջքի կապել, իր թևերով այնպիսի զորությամբ է սեղմել նրանց որովայնները, որ սրանք ուժազուրկ և հեզ կատուների նման կախվել են յուրաքանչյուրը մի կողմի վրա: Լաթի ծվենների նման կախկխված են նրանց երբեմնի հզոր և պատառոտող թաթերը, բերանները փակ են և գլուխները հեզորեն խոնարհված, մի երևույթ, որ հատուկ է պարտվածներին:

1818 թվականին գրիչներ Ստեփանոսի և Հովհաննես Ծործորեցու ձեռքով գրված Աստվածաշնչի մանրանկարներից մեկում Հովհաննես Մկրտիչը Հորդանանում մկրտում է Քրիստոսին: Ջրերի խորքից դևը՝ այլանդակ դեմքով, գաղտագողի և չարությամբ լցված, դիտում է այդ տեսարանը: Նա նստած է մորթը խայտերով պատած հովազի մեջքին... Ուրեմն, կարելի է ասել, որ հին ժամանակ, ժողովրդի պատկերացմամբ, սատանան դաշնակցած էր երկրի վրայի իր չարասիրտ գործակցի՝ հովազի հետ: Գոնե այդպես է պատկերացրել միջնադարի Թորոս մանրանկարիչը՝ Աստվածաշունչը նկարազարդողը:

Մի այլ ձեռագիր ավետարանի սկզբում նկարված խորանի աջ և ձախ կողմերում մի-մի վիթ է նստած, իսկ ներքևում մի-մի հովազ պպզած վեր են նայում ագահորեն, հավանաբար հույս ունենալով բաժին ստանալու այն վիշապների ավարից, որոնք սողալով մոտենում են սարսափից կծկված մի այլ վիթի: Այստեղ ևս բարի նպատակ չի զգացվում հովազների դիրքից: (Այս նկարն արված է 1287 թվականին մի ավետարանի մեջ, որը գրվել է Ակներում՝ Հովհաննես արքայաեղբոր ձեռքով):

Հովազը հանդուգն գազան է՝ ամենից անվախն ու համարձակը մեր երկրի գազանների մեջ: Հայտնի է դեպք, երբ նա հարձակվել է և հոշոտել զինված որսորդներին: Հնում ևս, անշուշտ, հայերը գիտեին նրա այդ վարքը, ուստի և նման տեսարաններ նկարել են մագաղաթյա գրքերում: Նայենք այդ կարգի երկու նկար: Մի տեղ ահա գոտեմարտ է տեղի ունենում հովազի և որսորդի միջև. գազանը տապալել է մարդուն և «շալակը թռած»՝ հոշոտում է վիզը, իսկ տագնապահար զոհը փչում է իր որսորդական եղջյուրը՝ օգնության է կանչում ընկերներին: Քիչ այն կողմ մի այլ մարդ նույնպես փող է հնչեցնում. հավանաբար տեսել է գազանի հարձակումը ընկերոջ վրա և իմաց է տալիս մյուս որսորդներին: (տես Մատենադարանում պահվող 9422 ձեռագրի 9բ թերթը): Նույն թերթի վրա պատկերված խորանի վերևում մի հեծյալ որսորդ (թե ամեն իր ճամփան գընացող ուղևոր) դեպի ցած թեքված՝ պաշտպանվում է հովազի հարձակումից: Հեծյալը ամբողջովին կարմիր է հագել, իսկ տակի ձին երկնագույն-կապույտ է: Մի այլ ձիավոր հետևից աղեղը լարել է դեպի գազանը. հավանաբար վճռել է օգնության հասնել զոհին:

Միջնադարի կրոնական գրքերի մեջ հովազները հաճախ նկարվում են թևավոր, օրինակ, 13-րդ դարում գրված մի ավետարանի մեջ զետեղվածը, որը պատկերում է հայկական էպոսում նկարագրըված դևերի խնձորախաղը: Այստեղ դևերը ավելի շուտ ընձառյուծների են նմանեցված, հավանաբար իրենց ուժի, ճարպկության և արյունարբու արարքների պատճառով:

Այդպես ատելի է եղել հովազը անցյալում, ատելի է նաև այժմ: Նա ոչնչացնում է մեր բնությունը զարդարող արժեքավոր կենդանիներին՝ այծյամներին, լեռնային ոչխարներին, քարայծներին, կաքավներին, լեռնային հավերին ու հնդուհավերին, արոսներին ու դաշտահավերին, վընասներ է հասցնում մեր անասնաբուծությանը, երբեմն հարձակվում է նաև մարդկանց վրա:





Եղվարդ. Աստվածածնի տաճարի բարձրաքանդակ, 1328 թ.
Ավետարան, 1357 թ., ծաղկող Զաքարիա



**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
**բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

**ԶՐՈՒՅՑ ՔԱՌԱՍՈՒՆՎԵՑԵՐՈՐԴ**

# Մեծ Հայքի բաժանումը

378 թ. Մանվել Մամիկոնյանը ձևական թագավոր է կարգում Պապի ավագ որդի Արշակին (Արշակ III), իսկ կրտսեր որդուն՝ Վաղարշակին դարձնում է գահակից: Նրանց մորը (Պապի կնոջը)՝ Զարմանդուխտին պատվում է իբրև հայոց թագուհու: Իրեն էլ հայտարարում է հայոց գահի խնամակալ:

Պարսկաստանի նոր թագավոր Արտաշիր II-ը ամեն կերպ սիրաշահում էր Մանվելին: Նա իր ազգական Սուրենի դեսպանի միջոցով առատ նվերներ է ուղարկում Մանվելին, Զարմանդուխտին, Արշակին, Վաղարշակին և հայոց այլ մեծամեծների: Փավստոսը գրում է. «Եվ պարսից թագավորը Զարմանդուխտ տիկնոջ համար ուղարկեց թագ ու պատմուճան և թագավորական վառ դրոշակ, երկու մանուկների՝ Արշակի ու Վաղարշակի համար՝ թագեր: Նույնպես Մանվել սպարապետի համար ուղարկեց թագավորական պատմուճան, մի սամույր և գլխանոց՝ ոսկուց ու արծաթից շինված գարդմանակ (սաղավարտի զարդ) և գըլխանոցի վրա, գագաթում արծվի ետևից՝ թագի կապը՝ աշխարավանդ (թագի զարդ) հանգույցը ու կրծքին պատվանշան, ինչպես կրում են թագավորները, նաև շիկակարմիր վրան, վըրանի վրա արծվի նշան և մեծամեծ սրահակներ ու կապուտակ երկնագույն հովանոցներ: Նաև՝ սեղանի ոսկի սպաս է ուղարկում Մանվել սպարապետին»:

Նվերների այս թվարկումն այսօր մեզ օգնում է ծանոթանալու 4-րդ դարի հայոց և պարսից արքունիքներում գործածվող զարդերին ու իշխող բարքերին:

Սուրենը զորքով էր եկել Հայք, իբր օգնելու, որ հայերը պաշտպանվեն Հռոմի զորքերից: Սուրենը փաստորեն դարձել էր Հայաստանի մարզպանը, Մանվել Մամիկոնյանը նրան էր ենթարկվում: Երբ 383 թվականին պարսից թագավոր Արտաշիր II-ը մեռավ, Մանվելն իր զորքով հարձակվեց պարսից բանակի վրա, ջախջախեց այն: Սուրենը փախավ Պարսկաստան: Դրանից հետո պարսիկները մի քանի անգամ հարձակվեցին Հայքի վրա: Մանվել Մամիկոնյանը հաղթեց ու փախուստի մատնեց նրանց զորքերը:

Մանվել Մամիկոնյանը որոշակիորեն հռոմեական կողմնորոշում ուներ: Նա, մերժելով Պարսկաստանի գերիշխանությունը, գերադասում էր Հռոմի հովանավորությունը, նաև իշխանությունը Հայաստանի նկատմամբ: Մանվելը նամակով դիմեց Թեոդոս կայսրին՝ խնդրելով իր հովանավորության տակ վերցնել Հայաստանն ու Արշակ III թագավորին:

Մանվելը մեռավ 384 թ.: Փավստոսը գրում է. «Երբ նա հիվանդ պառկած էր անկողնում և բոլորը հավաքված էին նրա շուրջը, այնտեղ էին և Արշակ թագավորը, և Վարդանդուխտը՝ թագավորի կինը, և հայոց բոլոր ավագները, մեծամեծները ու նախարարները, առհասարակ բոլոր երևելի մարդիկ՝ տղամարդ թե կին, ապա Մանվելը այս բոլորի առաջ բացեց իր բոլոր անդամները, մերկացավ և ցույց տվեց, որ իր մարմնի վրա մի դրամի մեծության չափ ողջ տեղ չէր մնացել, այլ խոցված էր պատերազմների մեջ... Սկըսեց լալ և ասել. «Մանկությունից ի վեր ես պատերազմների մեջ եմ մեծացել, ամեն վերք հանձն եմ առել քաջությամբ, և ինչո՞ւ ես բախտ չունեցա պատերազմի մեջ մեռնելու, քան թե այսպես անասունի նման մեռնեի.» Ես շատ հանդուգն էի ինձ պահում, բայց և այնպես ինձ վիճակվեց մեռնել վատթար մահով՝ անկողնում պառկած»:

Մանվել Մամիկոնյանի մահից հետո պարսկական կողմնորոշում ունեցող հայ նախարարները Պարսկաստանի նոր թա-

գավոր (383 թվականից) դարձած Շապուհ III-ին գանգատվում են Մանվելի կողմից թագավոր նշանակված Արշակ III-ից և խնդրում կարգել նոր թագավոր Արշակունիների տոհմից: Արշակը փախչում է Հայաստանի հռոմեական ազդեցության տակ գտնվող արևմտյան մասը և այնտեղ շարունակում թագավորել: Իսկ Շապուհ III-ը 384 թ. Հայաստան է ուղարկում մի հայազգի Արշակունու՝ Խոսրով անունով, որ դարձավ երկրի արևելյան մասի թագավոր ու իշխեց 10 տարի:

Սրանով Հայաստանն արդեն իսկ բաժանվեց երկու մասի, երկու Արշակունի թագավորներով՝ Արշակ III և Խոսրով III:

383—384 թվականներին Պարսկաստանը ու Հռոմը բանակցում էին Հայաստանը պայմանագրով իրար մեջ բաժանելու վերաբերյալ: Այդ բաժանմանը մեծապես նպաստում էր մի կողմից պարսկական, մյուս կողմից հռոմեական կողմնորոշում ունեցող նախարարների անհաշտ պայքարը: Վերջապես 387 թ. Պարսկաստանն ու Հռոմը Հայաստանն իրար մեջ բաժանելու պայմանագիր կնքեցին: Ղազար Փարպեցին գրում է. «Որպես հնացած կտոր Հայաստանը բաժանեցին իրար մեջ»:

Հիշենք, որ Մեծ Հայքի առաջին բաժանումը տեղի ունեցավ 135 տարի առաջ՝ 252 թ., բայց շուտով Տրդատ III Մեծի գահակալությամբ Մեծ Հայքը կրկին միավորվեց: Իսկ 387-ի բաժանումից հետո այլևս իսկական իմաստով միավորում չեղավ, և Մեծ Հայքի միասնական թագավորությունը այլևս չվերականգնվեց: Այդպես ճակատագրական էր այդ 387 թվականը:

Հայերը շատ մեղավոր էին: Հիշենք դրան նախորդող դեպքերը Հայաստանում. Բատ Սահառունին և Վարազդատ թագավորը սպանեցին Մուշեղ Մամիկոնյանին, Մանվել Մամիկոնյանը սպանեց Բատ Սահառունուն և գահընկեց արեց Վարազդատ թագավորին, հայ նախարարները քշեցին Արշակ III թագավորին... Այս բոլոր արարքների մեջ փառասիրության, նախանձի, վրեժխնդրության, եսասիրության ոգին էր իշխում: Թեև բոլորը հայրենասերի կեցվածք էին ընդունում, բայց միացյալ ուժերով թուլացրին Հայաստանը: Բատ Սահառունին իբր հանուն հայրենիքի և Արշակունիների գահի սպանել տվեց Մուշեղ Մամիկոնյանին, թեև պատճառը նաև Բատի փառասիրությունն էր, սպարապետ դառնալու, իշխող լինելու տենչը: Մանվել Մամիկոնյանն էլ եղբոր համար վրեժխնդիր եղավ և ոչ միայն սպանեց Բատին, այլև գահընկեց արավ հայոց թագավորին: Նրան նույնպես առաջնորդում էր իշխող լինելու տենչը: Եվ նա էլ էր գործում հայրենիքի անունով ու հանուն Արշակունիների գահի: Բայց փաստորեն մեծ հարված հասցրեց հայոց պետականությանը: Հայաստանի համար այն ծանր պայմաններում թագավորին վարկաբեկելն ու գահընկեց անելը հանցանք էր սեփական երկրի դեմ:

Այդպես, անձնականը, գլխավոր ու իշխող լինելու տենչը, ընդհանուր հայկականը չհասկանալը թուլացրին Հայաստանը այն աստիճան, որ ավելի քան 1000 տարի պահպանված Մեծ Հայքի թագավորությունը քայքայվեց:

Հայոց գլխին եկած այս մեծ աղետի տարում՝ 387-ին՝ փրկության մի արահետ բացվեց Հայաստանի համար. Գրիգոր Լուսավորիչի տոհմից Սահակը՝ Ներսես Մեծի որդին և Հայաստանի միասնության զորավիգ կանգնած կուսակցության ղեկավարը, դարձավ հայոց կաթողիկոս:

(շարունակելի)

# « ՁԵԶՊԵՍՆԵՐԻՆ ՄԻՇՏ ԵՐԱՆԻ... »

ՀԱՅԿԱԶ ՊՈՂՈՍՅԱՆ
պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

## Մարգար վարժապետ (Ամիրյան) (1858—1894)

Այս կրթված հայդուկապետը ծնվել է 1858 թ. Մշո Վարդենիս գյուղում, որը դաշտի համեմատաբար մեծ գյուղերից մեկն էր: Գյուղի բնակիչները բոլորն էլ հայեր էին: Մարգարը իր սկզբնական կրթությունը ստացավ ծննդավայրում, ա-



Սուրբ Կարապետ վանքը

պա 1872—1879 թթ. 7 տարի սովորել է Մշո ս. Կարապետ (Գլակա, Իննակնյա) վանքի դպրոցում, որը այդ ժամանակաշրջանում համարվում էր Տարոն աշխարհի ամենալավ դպրոցը: Ուսումնառությունից հետո Մարգարը վերադառնում է հայրենի Վարդենիս և մեծ ջանքերի գնով նոր տիպի դպրոց է հիմնում ու աշակերտներին սկսում է դաստիարակել հայրենասիրական ոգով: Գյուղի դպրոցը համապատասխան շենք չուներ, և 1882 թ. ժողովրդի միջոցներով ու Մարգար վարժապետի ակտիվ մասնակցությամբ սկըսվում և ավարտվում է նոր դպրոցի կառուցումը, որը և անվանվում է Արամյան: Դպրոցի շենքի կառուցման միջոցների պակասը լրացնելու համար Մարգար վարժապետը գնում է Թիֆլիս, որտեղ ծանոթանում է «Մշակի» խմբագիր Գր. Արծրունու, մեծ գրող ու պատմավիպասան Րաֆֆու և Թիֆլիսում գտնվող հայ մտավորականներից շատերի հետ: Ապա որոշում է Թիֆլիսից մեկնել Կոստանդնուպոլիս, որտեղ էլ ծանոթանում է Մ. Խրիմյանի հետ: Այս ճանապարհորդությունների ժամանակ ավելի ու ավելի է ընդլայնվում Մարգարի մտահորիզոնը:

Հայրենի Վարդենիս վերադառնալուց հետո, նա սկսում է համոզել իր համագյուղացիներին զենք ձեռք բերել, սովորել նրա գործածությունը, որպեսզի հարկ եղած դեպքում կարողանան պաշտպանվել: Մ. Ամիրյանի այս պահանջը բխում էր հայերի ծանր պայմաններից: Մահմեդականներին թուրքական կառավարությունը թույլ էր տվել զենք կրել, իսկ եթե հայերի մոտ զենք էր հայտնաբերվում, անխիղճ կերպով դատապարտում էին, մեղադրվելով հայդուկների հետ կապ ու-

Մշո դաշտը



նենալու մեջ, և գործը հասնում էր երբեմն մինչև 101 տարվա բանտարկության:

Հայտնի է, որ 1880-ական թվականներին Մշո դաշտում իր զինված հրոսակներով շրջում էր քուրդ Մուսաբեկը, որը ասպատակություններ էր կատարում: Նրա ավազակային վարքի դեմ բողոք բարձրացրեցին Ագրեվանք և Ղարս գյուղերի տանուտերեր (ռես) Օհանը և Միրոն: Մուսաբեկին բռնեցին, տարան Բիթլիս, սակայն շուտով ազատեցին: Նրան հաջողվեց կրակի վրա այրել Օհանին, ապա 1889 թ. իր ուժերով մտնում է Ղարսի տանուտեր Միրոյի տունը և առևանգում նրա եղբոր աղջկան՝ Գյուլիզարին: Այս գազանություններից հետո Մշո դաշտի 60 գյուղապետեր և գործիչներ հասան Կոստանդնուպոլիս և բողոքեցին նրա վարքի դեմ: Դատարանը սկզբում արդարացրեց ոճրագործին, սակայն բողոքներից հետո ստիպված Մուսաբեկին աքսորեց Մեքքա:

Մուսաբեկի՝ Մշո դաշտից աքսորվելուց հետո հանցագործություններ սկսեց գործել նրա եղբայր Ջազոն: Վարդենիսցիները հարսանիք ունեին և հարսը բերելու էին հարևան գյուղից: Երբ հարսանեկան թափորը գալիս էր դեպի Վարդենիս, Ջազոն իր զինված ուժերով հարձակվեց՝ ցանկանալով առևանգել հարսին: Արարքը զայրացուցիչ էր ու լկտի, և Վարդենիսի բնակիչները իրենց վարժապետ Մարգարի գլխավորությամբ սկըսեցին ինքնապաշտպանական կռիվներ, որոնց ընթացքում եղան վիրավորներ ինչպես հայերից, այնպես էլ քրդերից: Թափորը կռվով հասնում է գյուղ: Դրանից հետո քրդական նոր զինված ուժեր շարժվեցին դեպի Վարդենիս, որի բնակիչները իրենց վարժապետի քաջալերանքով մի մարդու նման ոտքի ելան ինքնապաշտպանության: Կռիվների ընթացքում իրենց հերոսական արարքներով աչքի ընկան նաև գյուղի կանայք: 1893 թ. Վարդենիսում սկսվեցին ձերբակալությունները: Գյուղի կանանցից ոմանք ձերբակալությունների առաջն առնելու նպատակով սկսեցին հրդեհել իրենց բնակարանները. «Հայ կիներու դյուցազնական այս հուսահատ փորձը շանթահարեց վայրագ կեղեքիչները,. անոնք ատոր վրա դադարեցուցին իրենց գազանությունները»: Այս կռվի կապակցությամբ Միհրան Տամատյանը գրեց «Վարդենիսցի կնիկ» բանաստեղծությունը: Գյուղացիները գընացել էին կռվի, սակայն նրանցից մի մարդ չի ցանկանում մասնակցել կռվին: Նրա կինը տուն մտնելով, վերցնում է իր լաչակը և գցելով ամուսնու գլխին՝ ասում է. «Առ գլխուդ,—ու վերցուց ըզքվանկ, որ սունենն էր կախ, ինքն կերթար հավար...»: Կնոջ այս արարքը տեսնելով, ամուսինը տեղից վեր է թռչում և «Վա՜խ լըմըն, վա՜խ» ասելով վազում է և հասնում իր կռվող համագյուղացիներին:

Մարգար վարժապետի գլխավորությամբ վարդենիսցիների այդ կռիվը հասկացրեց քրդական աշիրեթապետներին և թուրք իշխանավորներին, որ Մշո դաշտի հայերը անհրաժեշտության դեպքում կարող են նույնիսկ իրենց կանանց հետ պայքարի ելնել: Վարդենիսի այս կռվից հետո Մարգար վարժապետը նորից մեկնում է Կովկաս և Արաբոյի հայդուկային խմբի հետ վերադառնում Տարոն:

1892 թ. Մշո Ավզուտ գյուղի մարագներում թաքնված են լինում երկու հայդուկ հայեր, որոնք մասնակցել էին քրդական ուժերի դեմ տեղի ունեցած մի ընդհարման: Իմանալով այդ, քրդական զինված ուժերը և թուրք ոստիկանները շրջապատում են մարագը: Սկսվում է երկկողմանի հրաձգություն, որի ժամանակ անվրեպ կըրակող հայդուկներին հաջողվում է ըսպանել ոստիկանների ղեկավարին: Կըռվի ընթացքում սպանվում է հայդուկներից մեկը, իսկ մյուսը անհետանում է: Հաջորդ օրը գյուղ են մտնում թուրքական 300-ի հասնող զինված ուժերը և ամեն ժողովրդի նկատմամբ սկսում բռնությունները: Ջոկատի ղեկավարը պահանջում է գյուղի երիտասարդներից հանձնել իրենց զենքերը: Եվ քանի որ նրանց մեծ մասը զենք չուներ, ստիպված շրջապատի քըրդերից թանկ գներով զենք են գնում և հանձնում թուրքական զինված ուժերին:

Դրանից հետո թուրքական պատժիչ ջոկատը Ավզուտից շարժվում է Վարդենիս, Մարգար վարժապետին բռնում և տանում են Բաղեշի բանտը: Թուրքական քննչական մարմինները նրան անարդար կերպով մեղադրում են ոստիկանների ղեկավարին սպանելու համար: Սկսվում է Մարգար վարժապետի դատավարությունը: Չնայած Մարգար Ամիրյանը այս ըսպանությանը մեղսակից չէր, սակայն անվախ կերպով ընդունում է իր հեղափոխական լինելը և «աներկյուղ պարզում էր այն պատճառները, որոնք ստիպել էին նրան կռվի դաշտ դուրս գալ անարդար

բռնակալ կառավարության դեմ»: Իրավացի են Մարգար վարժապետի ժամանակակիցները, երբ նրան համարում են Մշո դաշտում «հեղափոխական ջաղափարի առաջին ծավալողներից մեկը»:

Մարգար Ամիրյանը մի տարի մնաց Բաղեշի բանտում: Չնայած այդ սպանության հարցում նա անմեղ էր, սակայն նրան հրապարակից հանելու նպատակով թուրքական դատարանը որոշեց վարժապետին կախել, և վճիռը ի կատար ածվեց 1894 թ. սկզբին: Երբ վարժապետը առանց վախի գնում էր դեպի կախաղան, դիմեց այնտեղ հավաքվածներին. «Հայեր, մի վհատի՛ք, քաջ գիտցե՛ք, որ այլևս հասած ենք մեր նպատակին: Թեև ես կմեռնիմ, բայց դուք պիտի ապրիք: Միայն այն երջանիկ ժամանակ զիս ալ չմոռնաք: Եթե խանդակաթ այցելուներ ունենամ գերեզմանիս շուրջը, ոսկերքս ալ կը հրճվին ու կը խայտան»:

Վարժապետի դիակը երեք օր մնացել է կախաղանի վրա «իբրև խրատական օրինակ ուրիշներու», բնակչության մեջ սարսափ տարածելու համար: Թուրքական իշխանությունները այդ արեցին հայ ազգային-ազատագրական շարժումները կասեցնելու նպատակով, սակայն պայքարը դրանից հետո ավելի ու ավելի մեծ թափ ստացավ: Բաղեշի հոգևոր առաջնորդ Ե. Չիլինկիրյանը, որը իր պաշտոնատեղին է հասել 1897 թ. օգոստոսին, նշում է, որ չնայած ինքը չի տեսել Մարգար վարժապետին, սակայն Բաղեշի ս. Կարմրակնյա եկեղեցու մոտ գտնվող նրա գերեզմանը դարձել էր հասարակաց ուխտատեղի, և «ախտաժետ կանայք ու օրիորդք գերեզմանի վրա կը լվացվեին և հողեն ալ կուց մը կը տանեին ի բուժումն ախտացելոց»: 1899 թ. այս եկեղեցու բակում թաղվեց նաև Ս. Վարդանյանը՝ Աղբյուր Սերոբը:

**ՍՏԵՓԱՆ ՄՈՎՍԻՍՅԱՆ**
**Վրացական ԽՍՀ,**
**Ախալքալաքի շրջան,**
**գյուղ Տուրցխ**

## Ամպը

**Քամին քշել է հոտը ամպերի**
**Ու երկնի ճամփով հեռուն է տարել,**
**Մի ճերմակ ամպիկ՝ սահելով զգույշ,**
**Իջել ու ժայռի տակ է ծվարել:**
**Նայում եմ ամպին, ու թվում է ինձ,**
**Թե մի գառնուկ է ամպը սպիտակ,**
**Մի գառնուկ է, որ հոտից ետ ընկել**
**Ու վախից կուչ է եկել ժայռի տակ...**

## Ժայռը

**Կախվել է ժայռը՝**
**Մեջտեղից կիսված,**
**Կարծես թե շուտով**
**Պիտի ընկնի ցած:**
**Բայց ընկրկում է,**
**Ետ է քաշվում միշտ...**
**Ոտքի տակ երգող**
**Աղբյուրի ձայնից:**

ԱՇՈՏ ՔԵՐՈԲՅԱՆ

# ԱՊԱԿԵԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

Ապակի բառը հանդիպում է դեռևս Ագաթանգեղոսի մոտ, երբ նա պատմում է Էջմիածնում նահատակված սուրբ կույսերի ավանդավեպը: Հռիփսիմեն ու Գայանեն ապակե հուլունքներ էին պատրաստում ու վաճառում: Հայերենում ապակի բառն այլ կիրառություն ևս ունի. ջնարակած խեցեղենը կոչվում է նաև ապիկած՝ ապիկի-ապակի բառից: Ապակեղենի հնագույն նմուշներ շատ են հայտնաբերվել այսօրվա Հայաստանի տարածքում: Այդ նմուշների տարիքը անցնում է երկու հազարից: Դրանք զանազան սրվակներ են, զարդեր, հուլունքներ: Իսկ մարդիկ ապակեգործությամբ զբաղվել են հինգ-վեց հազար տարի առաջ: Եգիպտոսն է այս գործի սկիզբը դնողը, որտեղ էլ հայտնաբերվել են սրվակներ՝ մոտ չորս հազար տարվա հնության, այդ ժամանակներին վերագրվող անոթներ ու ականջօղերի սնամեջ զինդեր, որոնց մեջ լցվում էին անուշահոտ եթերայուղեր: Այդ օծանելիքը փոքրիկ կաթիլներով թափվում էր Փարավոնական ժամանակների Եգիպտոսի վերնախավի կանանց ուսերին և նրանց դարձնում անուշահոտ ու հմայիչ: Օծանելիքը օգտագործելու այս եղանակը հիշվում է նաև Հին կտակարանում: Իսկ Հայաստանում այդ արհեստը տարածվեց Տիգրան Երկրորդ Մեծի ու Արտավազդ Երկրորդի օրոք, երբ նրանք մեծ թվով արհեստավորներ տեղափոխեցին Հայաստան: Սակայն ապակեգործությունը, որի մի ճյուղն է նաև ջնարակած խեցեղենի արտադրությունը, մեծ վերելք ապրեց միջնադարյան Հայաստանում, հատկապես Անիում ու Դվինում:

Ասենք նաև, որ սկսած իններորդ դարից բոլոր արհեստները վերելք ապրեցին: Դրա պատճառներից հիմնականն այն էր, որ իններորդ դարի երկրորդ կեսից սկսած ավելի քան 120 տարի Հայաստանն ապրեց համեմատաբար խաղաղ մի ժամանակաշրջան, ընդարձակեց իր տարածքները՝ ընդգրկելով պատմական Հայաստանի մեծ մասը՝ բացառու-



Սրվակ՝ վերադիր զարդով, Վաղարշապատ, մեր թվարկության սկիզբ

թյամբ բյուզանդական տիրապետության ենթակա տարածքից: Բագրատունյաց թագավորության օրոք նախարարական խոշոր տները բազում գյուղավորումներ ունեին և կազմում էին ինքնուրույն տնտեսություններ: Իսկ գյուղացին համեմատաբար ազատ էր, որովհետև կարող էր լքել իրեն կապալով տրված հողն ու դառնալ քաղաքաբնակ:

Այդ պատճառով էր երևի, որ շատ նոր քաղաքներ ծնվեցին, ինչպես Արծնն ու Ոստանը, Կարսը, նույնիսկ Աղթամարը որպես քաղաք է հիշատակվում հայ և օտար պատմիչների մոտ: Իսկ քաղաքաշինությունը ենթադրում է նաև արհեստների զարգացում: Ապակեգործության զարգացման համար նույնքան հիմք ու հումք կար, ինչպես մյուս արհեստների: Իսկ ապակու հումքը քվարցային ավազներն են, որոնց պաշարներն համարյա անսպառ են նույնիսկ այսօրվա Հայաստանում: Ժամանակակից ապակեգործության համար որպես հումք են ծառայում Արտենիի քվարցիաները, Ջերմուկի և Արարատի պեռլիտային ավազները: Միջնադարյան Հայաստանի ապակեգործներն օգտագործում էին Սիս սարի ավազահանքերը, իսկ Մանանաղի գավառի Պախրա լեռն համարյա ամբողջովին բաղկացած է գայլախազից՝ օքսիդաքար: Ապակի ստանալու համար հարկավոր էր նաև պոտաշ, որ ստացվում է բույսերից՝ դրանք այրելու եղանակով (հնում շատ հայտնի էր կալեքար անունով): Ներակրի աղ էր պետք, որով հայտնի էր Կողբը, կիր էր պետք ու կապարի օքսիդ, որոնք ավելացնում էին հնոցում ավազը դյուրահալ դարձնելու համար: Ավազից, գայլախազից կամ օքսիդաքարից ապակի ստանալու համար քարը հատուկ բովերի վրա ջեռուցանելու և վրան սառը ջուր լցնելու, ինչպես և ծեծելու եղանակով մանրացնում էին: Քանիցս բովելու և մանրելու եղանակով գայլախազը դարձնում էին սպիտակ փոշի: Այս ընթացքը կոչվում էր տվյալ նյութը կրացնել: Այնուհետև այս փոշին կամ ավազը հալում էին հնոցում և ստացված հեղուկ զանգվածից պատրաստում զանազան իրեր ու առարկաներ: Եթե անհրաժեշտ էր ապակուն տալ այս կամ այն գույնը, ապա ավելացնում էին համապատասխան գույն առաջացնող մետաղի օքսիդ: Ուշագրավ է, որ օրենքով նախատեսված է եղել, ինչպես տեսնում ենք Մխիթար Գոշի «Դատաստանագրքում», որ մետաղների ու այլ հանածոների հետ միասին պետք է իշխաններին պատկանեին նաև նրանց տիրույթներում գտնվող աղը, բորակը, նավթը, կուպրը և ապակին, այսինքն՝ ապակու հումքը: Եթե չլինեի ապակու տեղական արտադրությունը, չէր լինի և այս օրենքը: Միջնադարյան Հայաստանում, ըստ Մատենադարանում պահվող №3204 ձեռագրի, պատրաստել են նաև արհեստական մարգարիտ, կարողացել են խոշորացնել բյուրեղները: Ապակեղենի լավագույն նմուշները ինչպես Անիում, այնպես էլ Դվինում, գտնվել են միջնաբերդում, այսինքն՝ այն տեղերին մոտիկ, ու ապրել է վերնախավը: Նմանատիպ ն մուշներ են գտնվել նաև Դվինի Մայր տա ճարի ու կաթողիկոսարանի շուրջը: Այ տեղ գտնվել է մի բաժակ, որը գլանաձ է, իսկ հենակ-ոտքը գեղեցիկ շրջանա կաձև: Բաժակի ցածի կեսը դրսից զա դարված է լայն ու շատ գեղեցիկ ա կոսներով, որոնք արված են փորագրո թյամբ: Գտնվել են շատ բարձրորա վարդագույն ու կապույտ ապակու բեկորներ, որոնց վրա ռելիեֆ նախշեր կան նռան ու խաղողի ողկույզներով, որոնք չափազանց նման են Զվարթնոցի քանդակներին: Դրանք նույնպես 9—10-րդ դարերին են վերագրվել: Բյուզանդական մի աղբյուրում վկայություն կա, որ ապակեղեն է արտադրվել Բասենում: Հայաստանի քաղաքներում արտադրվող ապակին աչքի է ընկնում նաև գույների ու զարդերի բազմազանությամբ: Պղտոր գույնով ցածրորակ ապակու կողքին հանդիպում է բոլորովին թափանցիկ և վճիտ, հաստ և նուրբ ապակեղեն, շատ հաճախ՝ կանաչավուն և դեղնավուն նուրբ անոթների կամ դրանց բեկորների գտածոներ: Իրենց ձևերով ու կատարման տեխնիկայով վերին աստիճանի բազմազան են անոթների վրայի զարդերը: 9—10-րդ դարերի ապակե անոթներին շատ բնորոշ են փորագրանախշերը, երբեմն փոնը հեռացնելու եղանակով ստանում էին ռելիեֆ նախշեր: Նման անոթներն, իհարկե, անհատական ու մեծ խնամքով մշակված արտադրանք են: Ավելի ուշ՝ 12—13-րդ դարերում, ապակու արտադրությունն ընդարձակվում է և կորցնում իր անհատական բնույթը: Սկսում են արտադրել առավելապես բաց դեղնավուն և կանաչավուն երանգի, իսկ նախկին փորքաքանդակ զարդերը տեղի են տալիս այլ

տեխնիկայով ստեղծվող զարդերին, անոթները պատրաստելու ժամանակ դրանց վրա դրսից նույն գույնի կամ այլ երանգի հալած ապակուց դնում են ծորած թելեր ու գնդիկներ: Այս եղանակով ստանում են զանազան երկրաչափական կամ խիստ ոճավորված բուսական նախշեր: Անիի ապակեղենի լավագույն նմուշներից է Բագրատունիների պալատում 1907 թվականի պեղումների ժամանակ գտնված սրճագույն ծաղկամանը: Այն շատ նուրբ է, ունի կոնաձև հատակ, իսկ կողերը դեպի վեր քիչ լայնանում են, ապա միանգամից նեղանալով կազմում են վզիկը:

Միջնադարյան ալքիմիկոսները շատ ծածկագրեր են թողել ձեռագիր մատյաններում, որոնք դժվար է վերծանել: Անշուշտ նրանք ապակի արտադրելու հետաքրքիր եղանակներ ունեին, եթե հաշվի առնենք, որ նրանց օգտագործած փորձանոթներից շատերը ապակեղեն էին: Սակայն վերադառնանք ապակեգործների թողած գլուխգործոցներին: Այստեղ արժե հիշատակել Անիի Գագիկի տաճարի մեծ ջահի 117 թասերը, որոնք բարձրորակ ու գույնզգույն ապակուց էին:

Ապակին օգտագործում էին նաև շինարարության մեջ, թափանցիկ լուսամուտներ էին ստեղծում: Սակայն այդ բանը մատչելի էր ունևոր վերնախավին միայն, իսկ մնացածների համար այծի բարակ կաշին էր դառնում լուսամուտի ապակի: Երևի ապակու բացակայությունն է եղել պատճառներից մեկն էլ, որ գյուղական խրճիթներում լույսի ու օդափոխության համար երդիկներ են թողել:

Ապակեպատ լուսամուտներով իշխանական պալատների նկարագրություններից ամենաճոխը երևի Թովմա Արծրունու թողածն է: Նա նկարագրում է 10-րդ դարի սկզբի՝ Ոստանում Գագիկ Արծրունի թագավորի կառուցած պալատի մանրամասները, որոնց մեջ նաև պատուհաններն է նշում: Եվ, անշուշտ, ճշմարիտ է Հովսեփ Օրբելին, որ «շողախաց լուսամուտները, որոնք արևը ծագելիս և մայր մտնելիս, փայլատակում են լճի մակերեսին և շողքեր են նետում դահլիճի ներսը ու շրջելով գույնզգույն նախշերի վրա՝ զմայլեցնում են տեսնողներին», ուրիշ բան չեն, եթե ոչ ապակեպատ լուսամուտներ:

Բազմաշերտ պեղումների ամեն մասում ապակեղենի առկայությունը, նախշերի տիպիկ հայկականությունը, որ այսօր էլ զարդարում են տարբեր ժամանակներից մեզ հասած ճարտարապետական կոթողները ու գրչության գանձերը, հավաստում են, որ Հայաստանում ապակեգործությունը իր ստեղծման պահից ընդհատում չի ունեցել և ստեղծել է շատ գլուխգործոցներ, ինչպես վերը նշվածները:

Այսօր Հայաստանում ապակու արտադրության մի քանի կենտրոններ կան: Լենինականը, որտեղ արտադրվում էր լուսատեխնիկական ապակի: Գործարանը ավերվել է և կվերականգնվի: Այս տեսակը բարձր լուսաթափանցելիություն ունի: Սևան քաղաքը, որտեղ ապակե թելեր են արտադրում: Այս տեսակը բարձր էլեկտրամեկուսիչ հատկություն ունի, նաև ջերմամեկուսիչ է: Այս թելերից ջերմատար խողովակներ փաթաթող գործվածքներ են ստեղծում: Երևանը, որտեղ արտադրվող ապակու տեսականին լայն ընդգրկում ունի՝ սկսած օպտիկականից՝ վերջացրած պատուհանի ապակիով: Իսկ Բյուրեղավանի արտադրած ճոխ սկուտեղները ու սկահակները մեծ պահանջարկ ունեն Միության մեջ: Այստեղ նշենք նաև, որ ԽՍՀՄ-ում ապակու էլեկտրահալման եղանակն առաջինը հայերն են կիրառել: Սակայն այս բոլոր տեսակների պսակը հեղուկ ապակին է: Երևանում հայ գիտնականները մշակել են պեռլիտների քիմիական վերամշակման եղանակով ջրում լուծվող ապակի ստանալու արտադրաեղանակը: Այս տեսակը, որպես կապակցող նյութ, օգտագործվում է թթվակայուն ցեմենտ արտադրելու համար: Պատրաստում են նաև կայուն սիլիկատային ներկեր, որոնք երբեք չեն գունաթափվում: Բազմաթիվ կիրառություններից արժե նշել նաև ջնարակների, օճառի, թղթի և սննդի արդյունաբերության մեջ նրա կիրառությունները ևս:

Այսօրվա Հայաստանում ապակեգործության զարգացման համար դեռ անելիքներ շատ կան, որովհետև բարձրորակ ու անսպառ հումքը հնարավորություն է տալիս ստեղծել ապակու և ապակեղենի բոլոր ձևերն ու տեսակները: Վերջին խոսքը դեռ չեն ասել հայ գիտնականներն ու այն անանուն վարպետները, որոնց գործերը զարդարելու են մարդկանց կենցաղն այնպես, ինչպես Մանվել ճարտարապետի կառուցած Գագիկ Արծրունու պալատը, որի գովքը մեզ համար թողել է պատմիչ Թովմա Արծրունին:



Նկարը՝ ԼԱԼԱ ԴԵՎԿԻՆՅԱՆԻ

# ՀԵՔԻԱԹ ԱՄԵՆԱԳԵՂԵՑԻԿ ՏԻԿՆԻԿԻ ՄԱՍԻՆ

**ԼԻԼԻԿ ՍՏԵՓԱՆՅԱՆ**

Կար-չկար խաղալիք սարքող մի վարպետ կար: Նա ոսկե ձեռքեր ուներ և կարող էր ամենատարբեր խաղալիքներ սարքել, բայց գերադասում էր տիկնիկները, մանավանդ, որ դրանք ավելի լավ էին վաճառվում:

Մի օր, երբ վարպետը շատ տխուր էր, որոշեց մի հետաքրքիր տիկնիկ ստեղծել, այնպիսի տիկնիկ, որ կարողանա քայլել, գլուխ տալ ու պարել:

Շատ երկար չարչարվեց վարպետը և ահա տիկնիկը պատրաստ է. սևաթույր գանգուրներով, գեղիրան, ժպտադեմ: Վարպետը խնդրեց ծանոթ մի դերձակուհու զգեստ կարել տիկնիկի համար՝ սև ու կարմիր ժանյակներից: Հիմա պետք էր փորձել, թե ինչպես է նա պարում: Վարպետի փոքրիկ տունը լեփ-լեցուն էր հետաքրքրասեր մարդկանցով: Նա վերջին անգամ ուղղեց տիկնիկի մազերի ժապավենը և լարեց: Ու տիկնիկը սկսեց պարել: Նա պարում էր ճիշտ և ճիշտ բալետի պարուհու պես, այնքան ճկուն, որ մարդիկ հաճույքից ծիծաղում և ծափ էին զարկում. «Այ քեզ հրաշք տիկնիկ,—միաբերան գնահատեցին բոլորը»:

Վարպետը մի քանի օր հիացավ իր ստեղծագործությամբ, հետո տարավ խանութ, որտեղ տարբեր խաղալիքներ էին վաճառում:

Տիկնիկն անընդհատ շուրջն էր նայում, նա գիտեր, թե իրեն ինչու են այդտեղ բերել: Շուտով մոտեցավ երկնագույն խալաթով մի սիրունիկ աղջիկ և նրա փեշից թուղթ կախեց: «Հետաքրքիր է, ի՞նչ է գրված այդ թղթի վրա»,— մտածում էր տիկնիկը, երբ մի տղա մոտեցավ, նայեց թղթին և սուլեց. «Այ քեզ գի՜ն...»: Տիկնիկը հասկացավ, որ թղթի վրա գրված է իր գինը և այն բավական բարձր է, որովհետև տղան շարունակեց.

— Շատ գեղեցիկ տիկնիկ է, ափսոս, այդքան փող չունեմ:

Տիկնիկն ուրախացավ, լսելով, որ ինքը շատ գեղեցիկ է: «Տեսնեմ ինձ ո՞վ կգնի»,— մտածում էր նա ու նախօրոք հրճվում այն մտքից, որ կարող է իր տիրոջ համար ոչ միայն ականահաճո լինել, այլև ուրախացնել՝ պարել ու զբոսանքի գնալ նրա հետ:

Այդ օրը տիկնիկին ոչ-ոք չգնեց: Երկնագույն խալաթով աղջկա խնդրանքով տիկնիկը տեղում երբեմն-երբեմն զանազան պարեր էր պարում: Խանութի այցելուները խմբվում էին ցուցափեղկի առաջ, հիացմունքի ճիչերով դիտում պարը, հետո հարցնում էին ինչ արժե և գլխիկոր հեռանում:

Հաջորդ օրը՝ ընդմիջումից առաջ տիկնիկին մոտեցավ մի ծերուկ:

«Աստված իմ, ես երբեք չեմ տեսել նրման գեղեցկություն: Եվ մինչև հիմա ոչ-ոք չի՞ գնել, տարօրինակ է: Ես ինքս հաճույքով կգնեի, բայց դե իմ ժամանակն անցել է, թոռներ էլ չունեմ, կասեն՝ ցնդել է ծերուկը»:

Հետո խանութ մտավ շքեղ հագնված կին՝ երեխայի ձեռքը բռնած: Փոքրիկ տղան երկար նայեց տիկնիկին, տեսավ,

թե ինչ գեղեցիկ է նա պարում և խնդրեց մորը գնել:

— Ոչ, ոչ, դու այնքան անզգույշ ես, կարող ես ջարդել, ափսոս է:

Տղան լաց եղավ, ոտքերը խփեց գետնին, բայց ոչինչ չօգնեց: Նա հետո մի քանի անգամ եկավ խանութ առանց մոր՝ տիկնիկին տեսնելու, իսկ հետո մոռացավ:

Օրերն անցնում էին սպասումի մեջ: Տիկնիկը հոգնում էր անընդմեջ պարելուց: Հետո խանութի տնօրենը կարգադրեց հանել նրան առջևի ցուցափեղկից և տեղավորել վերջին շարքերում: Նրան դուր չէր գալիս, որ այցելուները պարող տիկնիկին նայելուց հետո մյուսներին չէին մոտենում, թեև նրանց գինը բավականին մատչելի էր:

Տեղափոխումից հետո խանութն սկսեց ապրել առաջվա կյանքով: Խաղալիքները կամաց-կամաց վաճառվում էին: Միայն ամենագեղեցիկ տիկնիկն էր մնում տեղում. մարդիկ կամ այդքան դրամ չունեին, կամ վախենում էին ջարդել (այդպիսի շքեղ տիկնիկը պահելու համար պետք է համապատասխան պայմաններ ունենալ), կամ էլ բավարարվում էին նայելով, թե նա ինչպես է պարում, նայում էին—ծափահարում և գնում...

Միակ բանը, որ մխիթարում էր տիկնիկին՝ երկնագույն խալաթով աղջկա հավատն էր. «Դու շատ լավն ես, դու մեր խանութի ամենագեղեցիկ տիկնիկն ես, գուցե և ամենագեղեցիկ տիկնիկն ամբողջ աշխարհում: Այ կտեսնես, քեզ անպայման կգնեն, միայն թե դու տեղում երբեմն զանազան պարային շարժումներ արա, թե չէ այստեղից այնքան էլ լավ չես երևում»: Նա ամեն առավոտ ուղղում էր տիկնիկի զգեստի ծալքերը և մի քանի հուսադրող խոսք ասում:

Որոշ ժամանակ անց տիկնիկը նկատեց, որ աղջիկը շատ ցրված է դարձել, իրեն քիչ է մոտենում, անընդհատ ժամացույցին է նայում, իսկ աշխատանքից հետո, խանութի մոտ նրան միշտ մի երիտասարդ է սպասում: Մի օր էլ երկնագույն խալաթով աղջիկն աշխատանքի եկավ այդ երիտասարդի հետ և բոլորին շամպայն հյուրասիրեց: Խանութի աշխատողները համբուրում էին աղջկան, շնորհավորում և բարի ճանապարհ մաղթում: «Նա երևի ինչ-որ տեղ է մեկնում»,—մտածեց տիկնիկը և նույն պահին էլ լսեց աղջկա ձայնը. «Արի, ես քեզ ցույց կըտամ, ահա, սա է: Իսկապես շատ գեղեցիկ է, չէ: Գիտե՞ս— նա քայլում և նույնիսկ պարում է»: Տիկնիկի աչքերն ուրախությունից փայլեցին: «Գուցե այս երիտասարդն ուզում է գնել ինձ իր հարսնացուի համար»,— մտածեց նա ու սկըսեց պարել: «Այո, հրաշալի տիկնիկ է, երբ մենք երեխա ունենանք, նրա համար այսպիսի տիկնիկ կգնենք: Իսկ հիմա գընանք, թե չէ կուշանանք»:

Երկնագույն խալաթով այդ աղջկան տիկնիկն այլևս չտեսավ: Մյուս վաճառողուհիներն առանձնապես չէին սիրում նրան, առավոտյան ոչ-ոք չէր մոտենում, չէր ուղղում զգեստը, չէր բարձրացնում տրամադրությունը: Հետո տիկնիկին ավելի հեռու և չերևացող մի անկյուն խցկեցին ու մոռացան:

Որոշ ժամանակ անցավ: Մի օր էլ խաղալիքներ սարքող վարպետն եկավ և հարցրեց՝ չի վաճառվել արդյոք տիկնիկը: Ասացին, որ ինչ-որ խաղալիքներ վաճառվել են և բերեցին դրամը: «Դե, ոչ, դըրանք չէ, ես հարցնում եմ պարող տիկնիկի մասին»:

Վաճառողուհիները երկար փնտրելուց հետո, գտան և բերեցին տիկնիկը. նրա վրա հաստ շերտով փոշի էր նստել և նա այլևս չէր քայլում: Իսկ երբ զգեստը թափ տվեցին ու լարեցին, որ պարի, պարզվեց, որ նա չի պարում: «Երևի ինչ-որ բան փըչացել է»,— ասաց վարպետն ու տիկնիկին տուն տարավ:

«Տարօրինակ է, իհարկե, որ քեզ չգընեցին, ախր այդքան գեղեցիկ ես և պարել գիտես: Չեմ հասկանում, ուրիշ ի՞նչ է պետք մարդկանց»,— քրթմնջում էր վարպետը,— դե լավ, տեսնենք ինչ է պատահել»: Վարպետը հանեց տիկնիկի զգեստը, բացեց ներսն ու անսպասելիությունից քար կտրեց. տիկնիկի մետաքսից սիրտը վշտից ճաքել էր... «Ահա թե ինչու էլ չես պարում, իմ խեղճ տիկնիկ,— վշտացած հոգոց հանեց վարպետը,— քեզ էլ ոչ-ոք չի գնի... Էհ, ոչինչ, մնա ինձ մոտ»:

Վարպետը տիկնիկին տեղավորեց իր համեստ տան ամենաերևացող տեղում՝ հին կոմոդի վրա: Խաղալիքներ սարքող վարպետը մենակ էր ապրում: Իսկ հիմա նա երբեմն զրուցում էր տիկնիկի հետ կյանքի լավ ու վատից, թանկ ու էժանից, չարից ու բարուց: Միայն թե նա այլևս տիկնիկներ չէր սարքում, իսկ թե պա[illegible]հեր՝ նվիրում էր երեխաներին:



Գործ՝ ԷԴՎԱՐԴ ԽԱՐԱԶՅԱՆԻ



ԻՆԴԵՔՍ՝ 77806



ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.